## ԲՆԱՆԿԱՐ

Իջնում է ձյունը
Անտառին անդորր,
Ճերմակ սավանով
Ծածկում սար ու ձոր:
Գլգլան առուն
Էլ երգ չի ասում,
Ձյունոտ անտառով
Աղվեսն է վազում:
Իսկ մի քիչ այն կողմ,
Կաղնու ծառի տակ,
Դողում է վախից
Մի խեղճ նապաստակ:

*ԱՆԱՀԻՏ ՄԱՆՈՒԿՅԱՆ*
*Աբովյան քաղաքի միջն. դպր 6-րդ դաս. աշ.*

Գարունը գալիս էր:

Ուռենու ճյուղերը պտկում էին ու բմբլակալում, աղջիկները ձնծաղիկի փնջեր էին բերում հանդից ու դնում հողե կճուճների մեջ, արագիլները վերադառնում էին, կարմիր ոտքերով կանգնում էին աթարե ամբրոցի գլխին հյուսված իրենց հերվա բնի մեջ և դպրոցի կոչնակից ավելի արագ-արագ կտկտացնում.

— Կտ-կտ-կտ-կտ-կտ...

Բայց ինձ համար իսկական գարուն էր գալիս այն ժամանակ, երբ տավարը բաց էին թողնում ախոռներից: Չկար ինձ համար ավելի ուրախ տեսարան, քան այն, երբ ձմռան երկար ամիսներին ախոռի անշարժության մեջ գիրացած անասունները հրճվանքով տռտինգ էին տալիս բակերում, կտուրների վրա՝ Խառակոնիսի միակ փողոցում, պայծառ արևի տակ: Մենք էլ երեխաներով տռտինգ էինք տալիս ու վազվզում նրանց ետևից:

Գարնան հանդեսը հասնում էր իր ամենաշքեղ և հանդիսավոր աստիճանին այն ժամանակ, երբ դուրս պիտի հանվեին գոմեշները, մանավանդ Խաչոյենց Խաչոյի Ֆարմանը՝ երիտասարդ, հսկա, չալ ճակատով մի գոմեշ, որ այն տարի պատրաստվում էր դառնալ գյուղի կռվան: Ես հետո կպատմեմ, թե ինչ է «Գյուղի կռվանը»: Առայժմ տեսնենք, թե ինչպես են Ֆարմանին ախոռից հանում:

Երեկոյան ես մորս խնդրել էի, որ առավոտյան ինձ վաղ արթնացնի, չլինի հանկարծ քնով մնամ և չտեսնեմ Ֆարմանի դուրս գալը: Դրանից ավելի կլանող տեսարան ես կյանքումս չեմ տեսել: Ես կուզենայի նորից մանուկ դառնալ ամենից առաջ Ֆարմանի գարնան առաջին ելույթը տեսնելու համար:

Ամբողջ մեր թաղը, մեծով-փոքրով, հավաքվել էր Խաչոյի տան շրջակայքում, թառել տանիքների ու պատերի վրա և շունչը պահած սպասում էր: Օրը անամպ էր ու տաք: Մկրտչենց ամբրոցի վրա բույն դրած արագիլները կտկտացրին.

— Կտ-կտ-կտ-կտ-կտ...

Խաչոյենց ախոռից առաջինը դուրս եկավ նրա միջնակ որդին՝ Հովակիմը, որ այն ժամանակ հազիվ տասներկու տարեկան լիներ, բայց հագել էր բալաք շալվար, չուռ քյապախիկ, քոլոզին փուշի էր կապել, մեջքին՝ դաշույն: Նա դուրս եկավ կուրծքը ուռեցրած, ինքնավստահ, և այս ու այն կողմ նայելով գոռաց երեխաների վրա.

— Է՜յ, ճժե՜ր, հեռո՜ւ փախեք, չընկնեք Ֆարմանի ոտի տակ:

Վերջապես հպոր մի փնչոց արձակելով դուրս եկավ ինքը՝ Ֆարմանը, Խաչոյի և նրա ավագ որդի Գևորգի ուղեկցությամբ: Գոմեշի վզից կախված էր մի փայտե թալիսման՝ չար աչքերի դեմ և լծի մեծության մի փայտ, որ ընկնում էր նրա ոտքերի արանքը և

# ԳԱՐՆԱՆ ՀԱՆԴԵՍ

(«ԵՐԿՐՈՐԴ ԿՅԱՆՔ» ԳՐՔԻՑ)

ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

թույլ չէր տալիս, որ նա վազի չափից ավելի արագ:

Ֆարմանը մի պահ կանգ առավ ախոռի դռների մոտ, սպիտակ ճակատը բարձրացրեց, նայեց արևին ու մռնչաց: Գիրությունից հարթված նրա մեծ գավակը փայլեց արևի տակ ինչպես հայելի:

— Վա՜հ,— բացականչեց Պղկի Պողոսը, ցավոտ աչքերը ճպճպացնելով,— էսիկ հո գոմե՞շ չի, սա՛ր է: Վա՜խ եկել է տարել Գմոյի Մարալին: Գեղի կռվանն անցավ մեր թաղը:

Գմոն, այսինքն՝ ռես Պետրոսը, հարուստ և Խառակոնիսի սահմաններում ուսումնական մի մարդ, իր մեծ գերդաստանով ապրում էր ժամի բլրան մյուս կողմի թաղում: Նրանք ունեին գեղեցիկ մի գոմեշ, անունը՝ Մարալ, որ երրորդ տարին էր, ինչ հաղթում էր կռվի մեջ և մնում էր գյուղի կռվան: Խառակոնիսցիք ունեին մի հին սովորություն. ամեն տարի մայիսին գյուղամերձ ընդարձակ մի տարածության վրա իրար հետ կռվեցնում էին գյուղի երկու ամենաուժեղ գոմեշներին: Հաղթողը ստանում էր գյուղի կռվանի կոչում, ամբողջ տարին ազատվում էր լծից և ազատ քեֆ էր անում արոտների մեջ: Իսկ պարտվողը, եթե մանավանդ արդեն տարիքավոր էր, ամորձատվում էր և դառնում շարքային լծկան:

Դեռ ձմեռվանից պայմանավորված էին, որ այս տարվա մայիսին իրար հետ կռվելու պիտի թողնեն Գմոյի Մարալին և Խանձոյի Ֆարմանին: Ամբողջ գյուղը գիտեր և անհամբեր սպասում էր այդ հանդիսավոր օրվան: Եվ ահա մեր թաղեցիների առաջ կանգնած է կռվանության հսկա թեկնածուն՝ գեղեցիկ, պարարտ, վիթխարի:

— Փախե՛ք, փախե՛ք, փախե՛ք...

Հովոն էր Ֆարմանի ճանապարհը բաց անում: Ամեհի ավյունով լեցուն գոմեշը, իր կողերին պոչի հուժկու հարվածներ տեղալով, նետվեց առաջ, բարձրացավ կունրակը և դեմ առավ նախապես իրեն համար պատրաստված գոմաղբի կույտին: Մեր գյուղում գոմշացուլերը գարնանը դուրս հանելուց առաջ նախապես նրանց համար պատրաստում էին գոմաղբի կույտեր, որ գոմեշն իր եռանդը սպառի գոմաղբը քանդռտելով և իր ճանապարհին հանդիպած պատերին կամ մարդկանց վնաս չտա: Ֆարմանն սկսեց իր գլխի կատաղի հարվածներով ցաքուցրիվ անել գոմաղբի կույտը՝ փշրանքները թոցնելով իր մեջքին և կունրակի վրա: Մի պահ նա հիշեցնում էր կենդանի փնչացող պտուտահողմ:

— Ո՞նց է, ուստա՛ Կապար,— հպարտ պատկառանքով հարցրեց Պղկի Պողոսը:



— Պո՛լ է, պո՛լ,— պատասխանեց ուստա Կապարը:— Ես պոլ կոտոշներով վայ թե չդիմանա Գմոյենց Մարալի կեռ կոտոշներին:

Մեր գյուղում «պոլ» էին ասում այն գոմեշին, որի կոտոշները հաստ ու կարճ էին, աննշան կեռությամբ: Այդպիսին էր Ֆարմանը: Իսկ նրա հակառակորդը՝ Գմոյի Մարալը, երկար, կեռ ու սրածայր կոտոշներ ուներ: Մարալի այդ առավելությունը մեր Ֆարմանի նկատմամբ ես էլ էի հասկանում և սիրտս մղկտում էր:

— Աստծու բաները անքննելի են, ուստա՛ Կապար,— փիլիսոփայեց Պղկի Պողոսը:— Աստված պոլ գոմեշին տալիս է ուրիշ տեսակ շնորհքներ: Ես համոզված եմ, որ Գմոյի Մարալը չի դիմանա էս աժդահակ սարին:

— Տա՛ աստված,— խորունկ հառաչեց ուստա Կապարը:

Մարալի ու Ֆարմանի առաջիկա մրցության ելքով այնքան շատ էին մտահոգված խառակոնիսցիները, որ մեր թաղի երկու ամենալուրջ մարդիկ անգամ կիսում էին այդ մտահոգությունը:

Ֆարմանը վերջապես հանգստացավ և տերերի կարգադրությանը ենթարկվելով դանդաղաքայլ վերադարձավ ախոռը: Գարնան ամենավառ հանդեսը վերջացել էր և ամեն մարդ գնաց իր բանին:

Սկսվել էր գարնանացանը:

Խառակոնիսցիք արորի սարվածքները լծած գնում էին հանդերը՝ գարի, ցորեն, կտավհատ, կանեփ ցանելու: Գյուղի նախիրն էլ հավաքվում էր նախրատեղում մեր ծեռ Սալաթի գլխավորությամբ: Նախրորդ Մայիլը ամեն տարվա պես հաշիվում էր ու ծեծում ետ մնացող կամ ճանապարհից խոտորվող անասուններին: Նա կովերին ու երինջներին այնպիսի անհամոթ խոսքեր էր ասում, որ այդ անասունները կարծես նրան պիտի հասկանային և ամաչեին:

Անասունները, իհարկե, ո՛չ հասկանում էին, ո՛չ ամաչում: Բայց ես ինձ վատ էի զգում: Ես իմ սրտի խորքում երդվել էի, որ եթե մեծանամ ու դառնամ տավարած, անասուններին ո՛չ պիտի ծեծեմ, ո՛չ էլ, մանավանդ, հայհոյեմ: Ախար՝ նրանք բան չեն հասկանում և մեղք են:

Բայց այդ գարնանը պատահեց մի դեպք, որից իմ այդ բարի երդումը հալվեց, ինչպես ծմակում պահված մի բուռ ձյունը շոգ արևի տակ: Հրողբեր Խլոն մի փոքրիկ հերկ արեց գյուղին մոտակա իրենց արտում, ապա սարվածքին լծեց երկու թեթև աչառ և ինձ կարգադրեց, որ սարվածքը տանեմ տուն: Ես ուրախությամբ հանձն առա: Ես ուրախանում էի, երբ մեծերը ինձ որևէ գործ էին հանձնարարում:

Սարվածքի ետևն ընկած՝ քշում եմ տուն: Ձեռքիս ունեմ փոքրիկ, չորացած մի ճիպոտ: Որտեղից-որտեղ լույս ընկավ մեկ տարեկան մի սև մոզի և սկսեց պոկահարել իմ աչառներին: Ես բարկացա և մոզիին քշեցի հեռու: Նա վերադարձավ, մտավ սարվածքին լծված աչառների արանքը և սկսեց իր խաղերը: Հաբու էր տալիս աչառներին, տրտինգ էր տալիս նրանց կողքին, թռչում էր մեջքներին: Ես սկսեցի կատաղությամբ ծեծել այդ աներես մոզուն: Ճիպոտս կոտրվեց, և այնուհետև մոզին իմ ծեծին ոչ մի կարևորություն չէր տալիս: Ես սկսեցի նրան հայհոյել նախրորդ Մայիլի խոսքերով: Ո՛չ հասկանում էր, ո՛չ վիրավորվում: Ես կատաղությունից լաց էի լինում, մոզիի պոչը կծում էի, ոտքը բռնում և փորձում էի կոտրել: Բան դուրս չէր գալիս: Նա քացի տալով իմ ձեռքից ազատվում էր և շարունակում իր անտանելի չարությունները:

Այդպես էլ իմ սարվածքի հետ եկավ ու մտավ մարագ: Այստեղ ես մարագի դուռը փակեցի, ճարեցի մի երկար ու ծանր փայտ և ճանապարհին ապրած իմ կատաղության ամբողջ ուժով սկսեցի թակել այդ մատղաշ անասունին: Մայրս որտեղից-որտեղ ներս մտավ ու բռնեց ինձ.

— Էդ ի՞նչ ես անում, անաստվածի՛ տղա:

— Թող, ես դրա...— կատաղած դուրս պրծա մորս ձեռքից:— Գիտե՞ս դա ինչ է արել:

— Ի՞նչ է արել:

— Արյունս է խմել:

Ես մորս պատմեցի մոզու թույլ տված բոլոր անտանելի արարքները: Մայրս քահ-քահ ծիծաղեց.

— Բա չե՞ս ամաչում: Ես էլ խալխին ասում եմ՝ տղաս հապար խելքի տեր է: Բա մարդ մոզուց էլ կնեղանա՞: Մոզին, ի՞նչ է, երեխա՛: Աչառներ է տեսել, հետները խաղ է արել: Դու չե՞ս խաղում քո ընկերների հետ:

— Հա՛, խա՛ղ է արել,— իմ կատաղությունը դեռ չէր անցել: Մանավանդ որ մայրս մոզիի կողմը պահեց:— Ես դրան խաղ անել ցույց կտամ:

Մայրս փայտը ձեռքիցս առավ, աչառներին լծից արձակեց, դուռը բաց արավ, որ մոզին փախչի գյուղի խմբի կողմը, իսկ ինձ հրամայեց, որ տուն գնամ:





# ՄԻ ՑՈՒՐՏ, ՍԱՌՆԱՄԱՆԻՔ ՕՐ



ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Դրսում վաղուց մթնել էր: Սենյակում ցուրտ էր: Տղան շորերով մահճակալին պառկած քնել էր: Նա բացեց աչքերը: Հայրը նստած էր սեղանի մոտ: Նրա բուշլատը ու մորթե գլխարկը ընկած էին մահճակալին: Էլեկտրական ջեռուցիչին դրված թեյնիկում բլթբլթում էր ջուրը: Սեղանին դրված էր թեյի երկու դատարկ բաժակ, շաքարամանը, ափսեի մեջ՝ մի երկու կտոր հաց, պանիր և մի լիմոն:

— Վե՛ր կաց թեյ խմենք,— ասաց հայրը:

Նա թեյը լցրեց բաժակը:

— Ցուրտ է, գրողը տանի,— ասաց նա:

Բաժակը երկու ափով բռնած՝ նա խմում էր տաք թեյը:

— Ի՞նչ կա դպրոցում,— ասաց նա տղային:

Նրա աչքերը խփվում էին: Լցրեց մի բաժակ ևս:

— Տեղամասում դժոխային սառնամանիք էր,— պատմում էր նա:— Ես այնտեղ քրտնեցի, իսկ ավտոմեքենայի թափքում քամին մեջքիս էր խփում:

Նա ելավ, գրպանից հանեց ինչ-որ թղթեր, դրեց սեղանին: Ապա հանեց սապոգները, շորերը, ետ տարավ վերմակը և պառկեց:

Տղան նրա վրա գցեց վերարկուն, մարեց լույսը և պառկեց: Մութի մեջ երևում էր էլեկտրական ջեռուցիչի կարմիր կրակը: Տղան կծկվել էր վերմակի տակ, քունը չէր տանում: Հայրը շնչում էր ծանր, շուռ ու մուռ էր գալիս, տնքում էր:

— Սե՛թ,— ասաց հայրը:

Տղան շարժվեց:

— Ինձ ասպիրին տուր:

Տղան ելավ, դարակից վերցրեց հաբը, ջուրը լցրեց բաժակը, տվեց հորը: Ապա պառկեց և ինքն էլ չիմացավ, թե ինչպես քնեց: Դրսում ամբողջ գիշերը մոլեգնեց բուքը: Առավոտյան հայրը անկողնից չելավ: Սենյակում ցուրտ էր, ինչպես փողոցում, և հազիվ կարմրած ջեռուցիչը, թվում էր, ինքն էլ մրսում էր: Տղան թեյ դրեց:

— Երեկ շինվարչությունում ինձ վառելափայտ դուրս գրեցին,— ասաց հայրը:— Պետք է վառելափայտ ստանալ, իսկ ես հիվանդացա, և ես հիվանդ պես պառկեցի: Մենք երկուսս էլ այստեղ ցրտից կկոտորվենք: Ի՞նչ կարելի է անել:

Տղան նստել էր նրա դիմաց, աթոռին, վերարկուն ուսերին գցած: Տաք թեյը որոշ ժամանակ տաքացրեց նրա ներսը, բայց հիմա նորից ցուրտ էր:

— Դու ջեռուցիչը ավելի մոտ քաշիր,— ասաց հայրը,— ա՜յ, այդպես: Բայց դրանից ի՞նչ օգուտ: Պետք է վառելափայտ ստանալ:

— Հիմա ոտքով կայարան գնալ չի լինի,— ասաց տղան,— ձյունը ճանապարհը փակել է:

— Դու չես կարող,— ասաց հայրը:

— Ես չեմ կարող,— խոստովանեց տղան:— Եթե ճանապարհը փակ չլիներ, կգնայի:

— Պետք է մի բան մտածել,— ասաց հայրը,— ես գուցե երկար պառկեմ:

Դրսում օրը մռայլ էր, իջնում էր արագ ու նոսր ձյուն: Փողոցում լուռ էր: Հիմա բոլոր տղաները իրենց տներում են: Ապա սկսվեց քամին, և լուսամուտի ապակիները կնգկնգացին: Թվում էր, թե սենյակում էլ փչում է:

## ՁՄԵՌ

ՎՐԵԺ ՎԱՐԴՈՒՆԻ

Այգում, ձորում,
Սարում,
Ձյունը շոր է
Կարում:
Մեկին՝ վերմակ
Տաքուկ,
Մեկին՝ գուլպա
Փափուկ:
Մեկին՝ փաղուն
Թիկնոց,
Մեկին՝ մուշտակ,
Գոգնոց:
Մեկին՝ ձեռնոց
Մի տաք,
Մեկին՝ շապիկ,
Գդակ:
Այգում, ձորում,
Սարում,
Դաշտի գրկում
Արձակ,
Այսպես շոր է
Կարում
Մի լավ, բարի
Դերձակ:

— Իսկ ես քո հասակին գիտե՞ս ինչեր էի անում,— ասաց հայրը:

— Ինչե՞ր:

— Ճիշտ է, վառելափայտ երբեք չեմ ստացել,— խոստովանեց նա:

— Եթե կայարանի ճանապարհը փակ չլիներ, ես կգնայի,— ասաց տղան:— Իսկ հիմա ոչ մի ավտովարորդ իր հետ չի վերցնի:

— Չի վերցնի,— ասաց հայրը:— Բայց, լսի՛ր, իսկ ի՞նչ կլինի, եթե դու գնաս Արշոյի մոտ: Հը՞: Դու գիտե՞ս քեռի Արշոյին:

Տղան չգիտեր:

— Լսի՛ր, ուրեմն: Նախ վերցրո՛ւ այդ թղթերը: Կգնաս Հրազդան, համարյա ամեն օր դու գնում ես Հրազդան, կհարցնես այնտեղ «Ուրարտու» խորտկարանը, այնտեղ կգտնես Արշոյին, նա բուֆետապանն է, հանրաճանաչ մարդ է, և Հրազդանում փողոցի ուղածդ շունը քեզ նրա մասին կպատմի...

Տղան ելավ, սկսեց հագնել թաղիքե ոտնամանները:

— Մի՞թե քեզ չեմ պատմել Արշոյի մասին,— ասում էր հայրը:— Գոմելի տակ ես նրան մահից եմ ազատել: Դա այնպիսի օր էր, որ ոչ ոք չէր իմանա, թե ինչպես կռհվեց Արշոն:

Տղան վկին փաթաթեց շարֆը, վերցրեց թաթմանները:

— Ես նրան չորս կիլոմետր քարշ տվեցի, մինչև հրետանային գնդակոծման գոտուց հանեցի: Պատերազմից հետո նա եկավ Հրազդան, նրա համար շինվարչությունում աշխատանք ճարեցի, հետո նա կարողացավ իր գործերը խորտկարանում դասավորել: Դու գտի՛ր նրան և ուղղակի ասա՛, նա ամեն ինչ կանի:

Փողոցում սառնամանիք էր, սուր քամի: Սառած մայթով տղան քայլեց ավտոկայանի կողմը: Ճանապարհին հանդիպեց իր ընկերներից մեկին:

— Այդ ո՞ւր,— հարցրեց ընկերը:

— Գնում եմ կայարանից վառելափայտ ստանալու,— ասաց տղան:

Ընկերը, իհարկե, չհավատաց նրան: Ավտոբուսն ուշացավ, և կանգառում նա բավական մրսեց: Այստեղ նրան հանդիպեց Մացակը, որ նրա հոր հետ աշխատում էր մի բրիգադում:

— Այդ ո՞ւր ես գնում,— հարցրեց Մացակը:

— Գնում եմ կայարանից վառելափայտ ստանալու,— ասաց տղան:

— Իսկ հայրդ գիտե՞ այդ մասին:

— Գիտե,— ասաց տղան:

— Դեռ վաղ չէ՞ քեզ այդպիսի գործերի դնելը,— ասաց Մացակը:

— Եթե կայարանի ճանապարհը բաց լիներ, ամենևին էլ վաղ չէր լինի,— ասաց տղան:



— Ա՜յ թե հանաքչի ես,— ասաց Մացակը:— Իսկ ո՞ւր է հայրդ:

— Հիվանդ պառկած է:

— Հիվա՞նդ է,— ասաց Մացակը:— Դե ուրեմն պետք է գնալ նրան տեսնելու:

Տղան Հրազդան հասավ կեսօրին: Նա գիտեր «Ուրարտու» խորտկարանը և ուղիղ գնաց այնտեղ: Դռան առջև կանգնած էին մի քանի ինքնաթափ ավտոմեքենա: Շատ մարդ կար խորտկարանում, ավտովարորդներ, բանվորներ: Ներսը լցված էր ծխախոտի ծխով, և մի լուսամուտից հազիվ լուսավորվում էր բավական ընդարձակ, աղմկոտ սրահը: Բուֆետի առջև հերթ էր: Մարդիկ վերցնում էին գինի, հաց, օղի, աղ դրած վարունգ, ոմանք խմում էին ոտքի վրա կանգնած, ոմանք տեղ էին փնտրում կլոր սեղանների շուրջը: Մարդկանց արանքից տղան նկատեց բուֆետապան Արշոյին:

— Դա Արշո՞ն է,— հարցրեց նա մի անծանոթ մարդու:

— Արշոն է,— ասաց անծանոթը:— Իսկ քո ինչի՞ն է պետք:

— Ես Պարգևի տղան եմ:

— Բուլդոզերավար Պարգևի՞:

— Այո՛: Հայրս ինձ ուղարկել է նրա մոտ:

— Դե մոտեցի՛ր նրան:

Տղան կանգնել էր տեղում և չգիտեր ինչպես մոտենալ:

— Հեյ, Արշո՛,— բարձրաձայն ասաց անծանոթ մարդը,— այստեղ քեզ մի տղա է հարցնում:

Բուֆետապանը բարձրացրեց գլուխը, սև աչքերը խուլոյն նկատեցին տղային:

— Երո՛,— ձայն տվեց նա,— տես տղան ի՞նչ է ուզում:

Բուֆետից դուրս եկավ այդ Երոն՝ նիհարավուն, նեղ դեմքով մի երիտասարդ, և մանր, իրար մոտ տեղավորված, կարծես շիլ աչքերով նայեց տղայի ճակատին ու ասաց.

— Քեզ ի՞նչ է հարկավոր:

— Ես Պարգևի տղան եմ:

— Ո՞վ է այդ Պարգևը:

— Իմ հայրը:

— Արշո՛,— ասաց նիհար երիտասարդը,— նա Պարգևի տղան է:

— Իսկ ի՞նչ է ուզում,— հարցրեց Արշոն:

— Ի՞նչ ես ուզում,— հարցրեց նիհար երիտասարդը:

— Հայրս խնդրեց, որ քեռի Արշոն օգնի ինձ վառելափայտ ստանալ,— ասաց տղան,— նա հիվանդ է, իսկ եթե կայարանի ճանապարհը փակ չլիներ...

— Լսո՞ւմ ես, Արշո՛,— ասաց երիտասարդը,— հայրը խնդրել է, որ դու վառելափայտ ստանաս:

— Ինչ է խնդրե՞լ,— հարցրեց Արշոն:

— Խնդրել է, որ դու վառելափայտ ստանաս: Ինքը հիվանդ է և խնդրել է, որ դու ստանաս:

— Դա ի՞նչ բան է,— ասաց Արշոն,— նա խնդրե՛լ է, որ ես վառելափայտ ստանամ, իսկ նա էլ ուրիշ գործեր չունե՞ր: Ա՛յ քեզ մարդիկ: Կարծում են, թե ուրիշները գործ չունեն և միայն սպասում են իրենց ծառայություններ մատուցել: Երո՛, թո՛ղ այդ տղային, ափսեները վերջանում են, գնա խոհանո՛ց:

Շուրջն աղմկում էին, մարդիկ հրմշտելով, շշերը ձեռքներին, անցնում էին տղայի մոտով: Տղան դուրս գնաց, կանգնեց դռան մոտ, մայթին, և չգիտեր ի՞նչ անել:

— Դե՞,— ասաց ինչ-որ մեկը ետևից,— գործերդ տեսնում եմ լավ չեն:

Տղան ետ նայեց. այն անծանոթ մարդն էր, որին քիչ առաջ դիմել էր խորտկարանի սրահում: Մտավ կանգնած ինքնաթափ ավտոմեքենաներից մեկի խցիկը և կանչեց տղային.

— Հապա թռի՛ր ինձ մոտ: Թռի՛ր, թռի՛ր:

Տղան բարձրացավ խցիկը, նստեց նրա մոտ, անծանոթը ծածկեց դուռը, ու մեքենան միանգամից պոկվեց տեղից: Նրանք անցան փողոցով, անցան սառած լճակների մոտով և դարձան դեպի կայարան տանող ճանապարհը: Այստեղ շատ ձյուն էր կուտակվել և մեքենան դժվարությամբ էր առաջ գնում:

— Անունդ ի՞նչ է,— հարցրեց անծանոթ վարորդը:

— Սեթ:

— Ո՞ր դասարանում ես, Սե՛թ:

— Չորրորդ:

— Լեռնաքիմիականի կառույցում եղե՞լ ես:

— Ո՛չ:

— Ասա՛ հորդ, թող մի անգամ բերի: Ավտոմեքենայով ման կտամ, ամեն ինչ կտեսնես:

Հասան կայարան: Վարորդը իջավ մեքենայից, թղթերն առած գնաց դեպի մոտակա փայտե տնակը: Մեքենայի շարժիչը բանում էր, և խցիկում տաք էր: Առջևում երկաթե վահանով մի էլեկտրաքարշ գծերը ձյունից մաքրում էր: Շուրջը համարյա մարդ չկար: Վերջապես փայտաշեն տնակից դուրս եկավ վարորդը, մոտեցավ, նստեց ղեկի մոտ և դուռը ամուր ծածկեց:

— Գնացինք,— ասաց նա:

Անցան ձյունի հաստ շերտով ծածկված ճանապարհը, եկան սառած լճերի մոտ, հասան խաչմերուկ, և անծանոթ վարորդը կանգնեցրեց մեքենան:

— Դե,— ասաց նա,— այստեղից կարող ես ավտոբուսով գնալ: Ես առանց այն էլ ուշացա: Ասա՛ հորդ, վառելափայտը դուրս գրվեց, երեկոյան կբերեն:

Տղան վազեց հենց նոր շարժված ավտոբուսի ետևից: Ավտոբուսից, ըստ երևույթին, նկատեցին, դանդաղեցրին և բացեցին դուռը: Տղան ընթացքից ցատկեց ավտոբուս: Անծանոթ վարորդին նա էլ չտեսավ և հրաժեշտ էլ չտվեց: Տուն հասավ ճաշին մոտ:

— Դե՞,— ասաց հայրը,— դու Արշոյին գտա՞ր:

— Գտա,— ասաց տղան:

— Եվ գործը, իհարկե, գլուխ եկավ:

— Եկավ:

— Դե, կեցցե՛ Արշոն: Հիանալի մարդ է, այդպես չէ՞, մենք նրա հետ բոլորովին ուրիշ ընկերներ ենք: Այդպես հավվադեպ է լինում: Նա քեզ հետ եկա՞վ կայարան:

Տղան չգիտեր անծանոթ ավտովարորդի անունը, մոռացել էր հարցնել, և հայրը այդ Արշոյի մասին լավ էր մտածում, հայրը ուրախ էր, սովորաբար նա ասում էր. «Երբ նեղ վիճակում կլինես, հիշիր ընկերներիդ, քեզ կօգնեն»:

— Արշոն քեզ հետ եկա՞վ կայարան,— հարցնում էր հայրը:

— Եկավ,— ասաց տղան:— Մինչև կայարան եկավ: Իսկ վառելափայտը, ասացին, երեկոյան կբերեն:

Ձմեռվա մի ցուրտ, սառնամանիքոտ օր էր:

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ





# Ե Ր Ա Մ Ա Կ Ը

*ՄԱՆՈՒԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

*Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

Հեռու-հեռավոր տափաստանում ապրում էր ձիերի հսկա երամակը: Այն ժամանակ մարդիկ դեռ գոյություն չունեին, ոչ մի արարած չէր կարող նրանց սանձել ու հեծնել, և երամակը ապրում էր միայն իր քմահաճույքով ու իր օրենքներով: Հազարաձայն խրխինջով երամակը մեկ սլանում էր լայնարձակ հարթություններով, մեկ պտտահողմի պես պտտվում ինքն իր շուրջը, մեկ խաղաղվում էր, ցրվում, տարածվում արոտավայրում և մեկ հոգնած, խրտնած կոտրում ծարավը ու թավալ տալիս գետի խաղաղ ջրերում: Նոր ծնված քուռակներին երամակի փորձառուները սովորեցնում էին վազել, կանաչ արոտավայրերի տեղերն էին սովորեցնում, սովորեցնում էին, ուր պատսպարվել, երբ տափաստանում պայթում է կայծակը, երբ անձրևն ու փոթորիկն է վրա տալիս: Եվ քուռակները լսում էին նրանց, մեծանում կամաց-կամաց ու նույն բանը սովորեցնում իրենց զավակներին: Մայրամուտի հետ երամակը հետզհետե խամրում էր, կորցնում իր գույները ու երբ լրիվ գունաթափ էր լինում՝ փռվում էր աստղերի տակ դադար առնելու: Այդ ժամանակ երամակի տարիքավորները մի պատմություն էին պատմում Պեգաս ձիու մասին, որ իրենք լսել էին իրենց պապերից, և իրենց պապերն էլ լսել էին իրենց պապերից ու ոչ ոք չգիտեր՝ որքանո՞վ է ճիշտ այդ պատմությունը:

Պատմում էին, որ շա՜տ ու շատ տարիներ առաջ Պեգաս անունով այդ ձին ապրել է, իբր, հենց իրենց երամակում: Երբ ծնվել է, բոլոր քուռակների նման սովորական մի քուռակ է եղել նա, բոլորի նման կաթ է ծծել, բոլորի նման վազել մոր ետևից կամ խրխնջալով տրտինգ տվել լայնարձակ տափաստաններում: Միայն Պեգասի ճակատին մի սպիտակ աստղ է եղել, որ երամակի մյուս ձիերը չեն էլ նկատել: Հետո, երբ մի քիչ մեծացել է Պեգասը, երամակի փորձառու ձիերը նկատել են, որ նա տարբերվում է ողջ երամակից. սլանում է բոլորից արագ, ոչ մեկը չի հասնում նրա ետևից, ու ապա կորչում, անհետանում, և միայն մթան հետ հոգնած, քրտնած գալիս է, միանում երամակին:

— Այդ ո՞ւր ես կորչում,— հարցնում են նրան:

— Ես ճախրում եմ երկնքում,—ասում է Պեգասը:

— Ինչպե՞ս ես ճախրում:

— Ես թևեր ունեմ,— ասում է Պեգասը, և ողջ երամակը խրխնջալով ծիծաղում է նրա վրա:

— Դու ինչպե՞ս կարող ես թևեր ունենալ,— ասում են նրան,— ձին թևեր չի ունենում, իսկ դու մեզանից ես ծնվել...

Այն ժամանակ Պեգասը ոտքի է ելնում, ձգվում, տարածում մեջքին բուսած հզոր թևերը, և երամակի բոլոր ձիերը տեսնում են, որ իսկապես թևեր ունի Պեգասը: Սկզբում, իհարկե, բոլորն էլ զարմանում են, բայց կամաց-կամաց Պեգասի թևավոր լինելը նրանց համար դառնում է սովորական մի բան: Նրանք դարձյալ սլանում են տափաստաններով, փոխում արոտավայր-արոտավայրի ետևից և գուցե բո-

լորովին մոռանային Պեգասին, եթե ինքը՝ Պեգասը չխանգարեր երամակի անդորրը: Գիշերները, երբ երամակը փռվում էր քնելու, Պեգասը չէր քնում, պատմում էր երկնքում ճախրելու հաճույքի մասին, իր ցեղակիցներին անհայտ ծովերի, անտառների ու լեռների մասին, և դրանցից էլ այն կողմ սփռված գույնզգույն ու բուրող ծաղկե հովիտների մասին: Ձիերից շատերը նրա պատմություններից հուզված, չէին կարողանում քնել: Նրանք նույնպես ցանկանում էին զգալ ճախրելու հաճույքը, տեսնել էին ուզում անծանոթ լեռներն ու ծովերը և տենչում արածել գույնզգույն ու բուրումնավետ ծաղկե հովիտներում: Նրանք նախանձում էին Պեգասին, առավոտյան փորձում էին նմանվել նրան, նրա պես վազում էին, նրա պես ուզում էին թռչել, պոկվել գետնից, բայց թևեր չունեին և նրանց թռիչքը շատ կարճ էր տևում, վայր էին ընկնում, կոտրում, արնոտում իրենց ոտքերն ու դունչը:

— Դու վրդովում ես մեր անդորրը,— Պեգասին ասացին երամակի առաջնորդները,— վե՛րջ տուր քո հիմար պատմություններին:

Բայց Պեգասը չպատմել չէր կարող: Նա ամեն օր մի նոր ուղղությամբ էր թռչում, տեսնում նոր հրաշքներ և երեկոյան այդ նորանոր հրաշքների պատմությունն անում:

— Հեռացի՛ր,— զայրանում էին առաջնորդները,— գնա՛ ապրիր քո այդ ծովերում ու լեռներում, հանգի՛ստ թող մեզ:

Եվ մի զ?վ լուսաբացի, երբ երամակը ննջում էր, Պեգասը անձայն հեռացավ երամակից: Գնաց ու չվերադարձավ: Ո՞ւր գնաց Պեգասը՝ ոչ ոք չիմացավ:

Այսպես էին պատմում տարիքավոր ձիերը իրենց պապերից լսած պատմությունը, երբ մութ էր լինում, երբ աստղաշատ երկնքի տակ երամակը պառկում էր ննջելու և հովտով մի տխուր հառաչ էր անցնում:

— Մեկ էլ ե՞րբ կծնվի այդպիսի մի Պեգաս,— հարցնում էին անհամբեր զամբիկները:

Նրանք նույնպես ցանկանում էին պատմություններ լսել ծովերի, անտառների, լեռների մասին, ծաղկե բուրումնավետ հովիտների մասին:

— Հինգ հարյուր տարի հետո,— պատասխանում էին տարիքավոր ձիերը:

Բայց ձիերը երբևէ հաշվել իմացե՞լ են... Նրանք չգիտեին, թե որքան շուտ է անցնում հինգ հարյուր տարին: Նրանք չգիտեին, որ հենց իրենց երամակում, իրենց կողքին արածող կապտավուն քուռակի ճակատին սպիտակ մի աստղ կա: Նրանք չգիտեին, որ Պեգասի մասին իրենց արած պատմություններից ամեն օր մի նոր փետուր է բուսնում նրա ուժեղ մեջքին և շուտով այդ փետուրները կդառնան թևեր: Նրանց մտքով նույնիսկ չէր անցնում, որ շուտով, շա՛տ շուտով սպիտակ աստղը ճակատին այդ կապտավուն զամբիկը կխախտի երամակի բոլոր օրենքներն ու կսկսի ճախրել:



## ԾԻՐԱՆԻ ԱՅԳԻՆ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Ձմռանը ծիրանի այգին
Ժպտում է եղյամով պատած,
Սպիտակ շորերը հագին,
Կանչում է ձեռքերով սառած:

Եվ եթե շրջես դու այգում,
Եվ եթե դիպչես դու նրան,
Կթափվի քո գլխին մաքուր,
Աստղացոլ եղյամը բարակ:

Ձմռանը ծիրանի այգին
Թվում է նորից է ծաղկում,
Սպիտակ շորերը հագին,
Ձմեռվա սպիտակ գրկում:

# ԲԱՐԻ ԽՈՍՔԸ

ԱԼ. ԳՈՐԲՈՎՍԿԻ

«— Գնդակը դիպա՞վ,— հարցնում է սպիտակամորթ որսորդը տեղացի ուղեկցողին՝ քարայծի որսի ժամանակ:

— Այո՛,— պատասխանում է վերջինս,— ուղիղ սրտին դիպավ:



— Բայց նա փախավ:

— Այո՛, փախավ:

— Էլ ինչո՞ւ ես ասում, թե դիպել է:

— Դուք իմ տերն եք, և ես մտածեցի, թե ձեզ հաճելի չի լինի, եթե ասեմ, որ դուք միշտ վրիպում եք»:

Այս երկխոսությունն իր նոթերում մեջ է բերել հռչակավոր ճանապարհորդ և աշխարհագետ Դ. Լիվինգստոնը: Ինչպես տեսնում ենք, այս կրույցի մասնակիցներից գոնե մեկը հասկացել է այն պարզ ճշմարտությունը, որ ամեն մարդ սիրում է, երբ իրեն հաճելի բան են ասում: Բոլոր ժամանակներում դա առանձնապես զբաղեցրել է կամայական իշխանավորների ու տիրակալների: Պալատական վարվելակարգի մեջ դա ծնունդ է տվել յուրատեսակ մի ուղղության, իր կնիքը դրել արվեստի ու գրականության վրա: Զուր չէ, որ Ռուսաստանում 1754 թվականին օրենսգրքի նախագծում նշված էր, թե մտրակահարման ենթակա են մարդասպանները, ինչպես և այն նկարիչները, որ վատ են նկարում թագավորական դիմանկարները: Եվ դա դատարկ սպառնալիք չէր:

1835 թվականին Ռուսաստանում դրամ են կտրում, որի վրա պատկերված էր արքայական ընտանիքը: Թագուհին այդ նկարում իր տարիքից մեծ էր երևում: Դա տհաճ էր որքան իր, նույնքան էլ նրա ամուսնու՝ Նիկոլայ I-ի համար: Դրամն արգելվեց, իսկ դրվագողին սպանեցին ծեծելով, որովհետև չէր շողոքորթել ծերացող թագուհուն: Այս պատիժն էր կրում ամեն ոք, ով չէր կարողանում հաճելի բան ասել աշխարհի հզորներին:

Ճապոնական կենցաղային վարվելակերպը նախատեսում է, որ հյուրը հաճելի բաներ ասի տանտիրոջը: Այդ խնդիրը հեշտացնելու նպատակով, տանտիրուհին սովորաբար շատ արհամարհանքով է խոսում իր մատուցած ուտելիքի մասին: Հարգանք մատուցելու պատրաստ հյուրը առարկում է նրան: Այդ ժամանակ ինքը, տանտերն է սկսում արհամարհանքով խոսել իր կնոջ խոհարարական ունակությունների կամ էլ նույնիսկ որդու խելքի և ընդունակությունների մասին: Քաղաքավարի հյուրը չպետք է համաձայնի դրան: Սա այն միակ դեպքն է, երբ նա կարող է նույնիսկ վեճի բռնվել տանտիրոջ հետ, երկյուղ չունենալով, թե կվիրավորի նրան:

«Հաճելի բան ասելու» այս բոլոր ձևերը իրենց հիմքում ունեն ինչ-որ ընդհանուր մի բան: Այդ ընդհանուրը անկեղծության բացակայությունն է: Շողոքորթել մեկին, կնշանակի ասել նրան այն, ինչ ինքն է մտածում իր մասին: Այդ մասին մեծագույն հեգնանքով գրել է անգլիացի գրող Գ. Ֆիլդինգը. «Մեզ հատկապես դուր է գալիս այն շողոքորթությունը, որ վերաբերում է մեր չունեցած հատկություններին: Հիմարին ասացեք, թե նա շատ խելոք է, և սրիկային՝ թե նա աշխարհի ամենաազնիվ մարդն է, և նրանք իրենց գիրկը կառնեն ձեզ»: Քծնանքը միշտ էլ թույլի զենքն է եղել, քծնողը իր վարքագծով հաստատում է սեփական ոչնչությունն ու անկորությունը: Փոխադարձ կեղծավորության կանոնները ոչ մի ընդհանուր բան չունեն մարդկանց փոխադարձ հարգանքի հետ: Զուր չէ, որ այն հարցին, թե մարդկային թերություններից որն է ամենից ավելի կզզվանք պատճառում իրեն, Մարքսն առանց տատանվելու, պատասխանել է՝ քծնանքը:

Շողոքորթության և անկեղծորեն ասված հաճելի խոսքի մեջ խոր անդունդ կա: Այդ անդունդի մի եզրին մենք տեսնում ենք քծնող պալատականների ամբոխը, կեղծ ձայնով սովորական հաճոյախոսություններ շռայլող շողոքորթներին: Այդ խայտաբղետ խմբի մեջ առանց դժվարության կնկատենք նաև ժամանակակից



կոստյումներով մարդկանց: Դրանք շողոքորթներն են, երգիծաբանների ծաղրի մշտական կոհերը:

Բայց այս ամենը՝ մի կողմում: Իսկ մյուս կողմո՞ւմ:

Մյուս կողմում՝ բարի խոսքն է:

Կուպրինն իր հուշերում նշում է, որ Չեխովը մարդուն հաճելի լուր հաղորդելու առիթ բաց չէր թողնում: Ամեն տեսակի սուտ ու կեղծիքի անհաշտ թշնամի Չեխովը միշտ անկեղծ էր մարդկանց հանդեպ ունեցած ուշադրության մեջ:

— Ահա թե ինչ,— մի անգամ խնդրում էր նա Յալթայի իր ընկերներից մեկին,— այսօր այստեղ է ժամանել դերասանուհի Մեդվեդևան: Շատ բարի, տարեց կին է: Վաղուց արդեն չի խաղում, և կամաց-կամաց մոռանում

նե նրան: «Ղրիմի լրաբերում» գրեցեք, որ «Յալթա է ժամանել արքայական թատրոնի վաստակավոր դերասանուհի Մեդվեդևյան»: Խնդրում եմ, դա ձեզ համար առանձին դժվարություն չէ: Ծեր կինը կշոյվի դրանից: Նրա համար հաճելի կլինի համոզվել, որ իրեն ճանաչում են ու չեն մոռանում:

Մի անգամ Մայակովսկին «Կոմսոմոլսկայա պրավդայում» կարդում է Մ. Գոլոդնիի բանաստեղծությունը, որ դուր է գալիս իրեն: Ի՞նչ է անում բանաստեղծը: Նա հեռագիր է ուղարկում շնորհավորելով նրա հաջողությունը:

Մայակովսկին այդպես է վարվում, որովհետև գիտեր, թե ինչպիսի հրճվանք է պատճառում մարդուն արժանի գովեստը և աշխատում էր մարդկանց չկրկել այդ հրճվանքից: Բայց բանը միայն մարդուն հաճույք պատճառելը չէ: Երբեմն ժամանակին, մարդու կյանքի դժվարին պահին, ասված բարի խոսքը բավական է լինում փոխելու նրա ճակատագիրը:

Այդքան մեծ է խոսքի ուժը:

Նեապոլի ֆաբրիկաներից մեկում աշխատում էր մի տղա: Նա երազում էր երգիչ դառնալ: Բայց առաջին իսկ դասատուն, որին դիմում է տղան, հիասթափեցնում է նրան:

— Դու չես կարող երգել,— պատասխանում է նա մռայլ:— Դու բոլորովին ձայն չունես:

Եվ միայն տղայի մայրը, աղքատ մի գեղջկուհի, որ ոչինչ չէր հասկանում երգեցողության արվեստից, ասում էր, որ նա կդառնա երգիչ, որ նա կհասնի իր երազանքին, որ օրը-օրին նա ավելի լավ է երգում: Մայրը բոբիկ էր ման գալիս, որպեսզի այդ խնայողությամբ վճարի երգի ուսուցչին ևս մի քանի դասի համար: Երբ ոչ ոք չէր հավատում նրա տաղանդին, կամ միանգամայն անտարբեր էին մնում, միայն այդ աղքատ կնոջ բարի խոսքն էր, որ աշխարհի համար պահպանեց մեծագույն երգչին: Դուք գիտեք նրա անունը և լսել եք նրա երգերը: Այդ տղան Կարուզոն էր: Կարելի է պատմել և ուրիշ դեպքեր, երբ բարի խոսքը մարդկանց օգնության է հասնում: Անցյալ դարում Լոնդոնի փողոցներում թափառում էր աղքատիկ հագնված մի մանչուկ: Նրա անունը Չարլզ էր: Նրա հայրը պարտքերի պատճառով բանտ էր ընկել, իսկ տղան դեռ մանկուց գիտեր, թե ինչ բան է քաղցը: Մեծ դժվարությամբ նրան հաջողվում է աշխատանք գտնել: Ամբողջ օրը, մինչև ուշ գիշեր, Չարլզը պիտակներ է սոսնձում կոշկաներկի ամանների վրա: Բայց ուշ գիշերին, երբեմն էլ տոն օրերին, թաքուն պատմվածքներ է գրում: Իր առաջին ձեռագիրը փոստով մի ամսագրի է ուղարկում, երկյուղ կրելով, թե կծիծաղեն իր վրա: Երկար ժամանակ պատասխան չկար, հետո եկավ մերժումը: Այսպես, մեկը մյուսի ետևից, մերժվեցին նրա բոլոր պատմվածքները:

Բայց, վերջ ի վերջո, գալիս է մի օր, երբ առաջին անգամ ընդունվում է նրա ստեղծագործությունը: Ճիշտ է, նա դրա համար չի ստանում և ոչ մի պեննի, բայց հրատարակիչը տղային մի քանի քնքուշ, քաջալերող խոսք է ասում: Նա տղային ասում է այն լավը, ինչ կարող էր ասվել նրա պատմվածքի մասին, ոչ ավելին: Իսկ հետո տղան կանգնել էր փողոցում ու լաց էր լինում, մտաբերելով այդ խոսքերը: Ով գիտե, չասեր հրատարակիչն այդ խոսքը, գուցե ոչինչ չէր մղի Չարլզին նորից ձեռքն առնելու գրիչը: Եվ այդ ժամանակ, ձեզ հետ միասին, չէինք ունենա Չարլզ Դիկկենս անունով գրողին:



Մեզ ավելի մոտ ժամանակներում, դարասկզբին, Անգլիայի առևտրական պահեստներից մեկում աշխատում էր բավական տարածված Ուելս ազգանունով մի գրագիր: Ամեն առավոտ նա արթնանում էր ժամը հինգին, իսկ աշխատանքային օրը տևում էր տասնչորս ժամ: Նրա կյանքում հույսի ոչ մի շող և լավ բանի ըսպասելիք չկար: Երկու տարի անց, երբ նա այլևս չէր կարող դիմանալ, երբ նա ինքնասպանության դռանն էր, մի նամակ գրեց իր դպրոցական ծեր ուսուցչին: Ի՞նչ պատասխանեց ուսուցիչը: Մխիթարակա՞ն խոսքեր: Ո՛չ: Նա իր նախկին աշակերտին գրեց այն ամեն լավի մասին, որ գնահատում էր նրա մեջ: Դա հաճոյախոսություն չէր, այլ ճշմարտություն, այն լավ, բարի ճըշմարտությունը, որ հաճախ իմանում ենք մարդու մասին, բայց գրեթե երբեք չենք ասում նրան: Ուսուցիչը գրել էր, որ նա խելացի ու հաստատակամ տղա է, որ նա արժանի է ավելի լավ բախտի և պետք է հասնի դրան: Կյանքի դժվարին պահին ասված այդ անկեղծ ու բարի խոսքը վճռեց Ուելս ազգանունով գրագրի ճակատագիրը: Ըստ երևույթին, դուք կռահեցիք, որ խոսքը վերաբերում է Ուելսին, գիտա-ֆանտաստիկ բազմաթիվ վիպակների ու պատմվածքների հայտնի հեղինակ Հերբերտ Ուելսին:

Նույնիսկ այն դեպքում, երբ մենք ի վիճակի չենք օգնել մարդուն, ոչ մի բան այնքան թանկ չի լինի նրա համար, որքան անկեղծ ասված, քաջալերող, կարեկցական խոսքը:

Մի անգամ Յասնայա Պոլյանայում Լև Տոլստոյը այսպիսի մի կրույց է ունենում գյուղացի Գորդեյ Դեևի հետ.



# ՆԻԿՈԼԱՅ

*Ռուսական պոեզիայի խոշոր դեմքերից է Նիկոլայ Ալեքսեևիչ Նեկրասովը, որի ծննդյան 150-ամյակը լրանում է այս տարի։*

*Նեկրասովը դարձավ ռուս գյուղացու, աշխատավոր մարդու պաշտպանը, մերկացրեց ցարական չինովնիկների և կալվածատերերի դաժանությունները։ Այդ համարձակության և ճշմարտացիության համար մեծ բանաստեղծը հաճախ է հալածվել, բայց երբեք չի ընկճվել։ Պուշկինից և Լերմոնտովից հետո նա դարձավ Ռուսաստանի ամենաժողովրդական բանաստեղծը։*

*Նեկրասովի անունը սիրելի է նաև հայ ժողովրդի համար։ Նրա բանաստեղծությունները թարգմանել են Հովհ. Թումանյանը, Հովհ. Հովհաննիսյանը, Ավ. Ծատուրյանը, Եղ. Չարենցը, Գ. Սևակը և ուրիշները։*

## ՍՈԽԱԿՆԵՐԸ

Մեղմ օրորելով իր կրտսեր որդուն,
Մայրն ասաց ավագ երեխաներին.
— Դե՛, երեխանե՛ր, խաղ արեք դեռ դուք,
Շուտով կպրծնեմ ես կարը ձեռիս:

Մեր ձին կկապենք արոտում հիմա,
Ինքս կեր կտամ մեր սևուկ կովին,
Եվ սոխակներին լսելու համար
Պուրակ կգնանք հետո խմբովին:

---

— Ինչո՞ւ ես տխուր ու մոլորված, Գորդե՛յ:

— Դարդս շատ է, Լև՛ Նիկոլաևիչ, կինս մեռել է:

— Կինդ լավն էր:

— Չէ՛, ինչ լավն էր, ինձնից շա՜տ մեծ էր. իմ կամքով չէի ամուսնացել:

— Հապա ինչ, լա՞վ աշխատող էր:

— Չէ՛, որտեղի՞ց: Հիվանդ էր, տաս տարի վառարանի վրայից չէր իջել: Աշխատել իսկի չէր կարող:

— Դե ասա հիմա վիճակդ ավելի թեթև կլինի:

— Է՜հ, տե՛ր իմ Լև Նիկոլաևիչ, ո՞նց թեթև կլինի: Առաջ երբ էլ որ տուն մտնեի, վառարանի վրայից կնայեր ու կհարցներ. «Գորդե՜յ, ա՜յ Գորդեյ, մի բան կերե՞լ ես»: Հիմի էլ ո՞վ պիտի հարցնի:

Մարդկային կարեկցանք: Դա չի կարելի սովորել, ինչպես անկարելի է բարեսրտություն սովորել:

1908 թվականի մայիսին Չերժինսկին բանտարկված և նետված էր մենախուց: Գարնանային այդ օրը նա առանձնապես տխուր էր: Մայրամուտի վերջին շողերի հետ, գիրքը ձեռքին նա մոտենում է լուսամուտին: Հանկարծ դրսից լսվում է քայլերի ձայն: Ժամապահն էր: Զինվորի ջինելով այդ անծանոթ մարդը դեմքը մոտեցնում է վանդակապատ լուսամուտին.

— Տխրո՞ւմ եք: Փակել ու պահո՞ւմ են ձեզ:

Թվում է, թե փոքրիկ միջադեպ է, ասված մի քանի բառ միայն: Բայց այդ պահին դրանք շատ թանկ էին Չերժինսկու համար:

Մեզ ասված բարի խոսքը շատ երկար է մնում մեր հիշողության մեջ: Բայց ինչո՞ւ մեր առօրյա կյանքում մենք այնքան ժլատ ենք այդ բարի խոսքն ասելիս: Չգիտես ինչ-որ կապվածության թե ամոթխածության պատճառով մենք սովորաբար մարդուն բարձրաձայն չենք ասում այն բարի հաճելի խոսքը, որին արժանի է նա:

Բայց գուցե դրա պատճառը կապվածությունը կամ ամոթխածությունը չէ, այլ՝ անտարբերությո՞ւնը:

Որքան լավ կլիներ, եթե մենք ամաչեինք կոպիտ խոսքեր ասել այնպես, ինչպես երբեմն ամաչում ենք մարդուն ասել այն հաճելի խոսքը, որին նա արժանի է:

Այս տողերը կարդալիս խորհեցե՛ք մի պահ: Հիշեցե՛ք ձեր ծանոթներին, ձեր ընկերներին, այն ամեն լավը, ինչ գիտեք նրանց մասին ու գնահատում եք նրանց մեջ: Իսկ այժմ ասացե՛ք, նրանք ձեզնից հաճա՞խ են լսել այն լավը, ինչ մտածում եք իրենց մասին:

Մենք խոսում ենք ոչ առանձին դեպքերի, այլ առհասարակ վարքագծի մասին: Մենք խոսում ենք մարդկանց հանդեպ ունեցած ուշադրության, բարի խոսքի, իբրև ուշադրության արտահայտության մասին:

# ԱԼԵՔՍԵԵՎԻՉ ՆԵԿՐԱՍՈՎ

Իմ լա՛վ բալիկներ, հենց այդ պուրակում,
Մարդկանց զրույցի և ծիծաղի տակ,
Սոխակներն են միշտ սուլում ու երգում
Մարդկանց երգից էլ անուշ ու հստակ:

Այնտեղ բոլորը շատ լավ են զգում.
Միայն թե (Կյի՛մ, ձեռքդ քե՛վ պահիր)
Քիչ էր մնում, որ մեր այդ պուրակում
Սոխակներն անուշ էլ չմնային:

Այսր Կուրսկի այդ սոխակները մեր
Բարձր գին ունեն: Նրանց որսացին,
Նրանք էլ վախից մի օր թռան վեր
Եվ այս կողմերից հեռու գնացին:

— Գարուն է, սակայն լուռ է պուրակում,—
Չեր պապն անտառից եկավ ու պատմեց,—
Էլ սոխակները այնտեղ չեն երգում:—
Եվ մեր գյուղացին տխրեց ու տրտմեց:

Ահա և նորից տոներ են գալիս,
Մենք դաշտ ենք գնում ուրախ երգելու:
Տոն է, բայց տոնի հոտ էլ չի գալիս:
Գյուղացիք իրենց մորուքն են քորում:

Ու որոշում են նրանք իրար մեջ
(Աստծո օգնությամբ խելքի են եկել)
Այլևս երբեք այդ պուրակի մեջ
Թակարդ ու ծուղակ, ցանցեր չդնել:

Քանի տարի է չի գնում պուրակ
Ոչ մի գյուղացի թակարդը ձեռին,
Եվ այդ արգելքն է անցնում շարունակ
Հայրերից որդուն, պապից իր թոռին:

Ու միշտ գարնանը անտառն է թնդում.
Ինչքան օր՝ այնքան նոր սոխակ-երգիչ:
Նրանց երգի տակ գյուղն է քուն մտնում,
Մենք արթնանում ենք նրանց երգերից...

Դո՛ւք էլ լավ հիշեք և մի՛ մոռանաք.
Թող ատամած չանի ցանց դնեք այնտեղ:
Չէ՞ որ սոխակն էլ պիտի ունենա
Հանգստանալու ինչ-որ մի լավ տեղ...

Փոքրը փարվում է մոր պարանոցին,
Միջնեկը կատվին հանգիստ չի տալիս,
Իսկ ավագ որդին՝ նախ գլուխկոնծի,
Ապա մայրիկին յուրջ հարց է տալիս.

— Իսկ մարդկանց համար, մայրի՞կ իմ անգին,
Կա՞ նման մի տեղ աշխարհում արար:
— Չէ՛, առանց կռվի, տուրքի ու հարկի
Ոչ մի տեղ չկա աշխարհի վրա:

Իսկ մարդու գլխին աշխարհում արար
Թե պաս չլիներ այդպիսի վայրը,
Իր երեխեքին ձեռքերի վրա
Այնտեղ կտաներ գյուղացի մայրը:

Թարգմ. Պ. ՍԵՎԱԿԻ



Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ



# ՄՈՂԵՍՆԵՐ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Երբվանի՞ց եմ ճանաչում ես այս սողուններին: Կարծեմ այն ժամանակներից, երբ ես իմ ընկերների հետ գնում էի լողանալու մեր գյուղի մոտով անցնող առվում:

Ողորկ ու թեք լանջով մի ժայռի տակ «գյոլ» էինք կապել, որ հիմա իմ գոտկատեղին էլ չի հասնի, բայց այն ժամանակ այնքան փոքր էինք, որ ջուրը հասնում էր մինչև մեր վտիտ ուսերը: Դուրս էինք գալիս ջրից, մեկնվում գոլացած սալին ու բավականությամբ ընդունում ամռան արևի դուրեկան տաքությունը: Այդ ընդարձակ սալին, մեկնից պատշաճ հեռավորության վրա մեկնված տաքանում էին նաև նրա ճեղքերի բնակիչները՝ կանաչավուն մողեսներ:

Ինչքա՜ն մողես կար այդ ժայռի վրա... Երևի պայմանները նպաստավոր էին այդ սողունների բնակության համար. վտակի ափերին վխտում էին ամեն տեսակի միջատներ, ճանճեր, մլակներ՝ մողեսների սիրած ուտելիքը: Ժայռը բազմաթիվ ճեղքեր ուներ՝ հիանալի թաքստոցներ: Եվ տաքանալու ի՜նչ հիանալի հարմարություն՝ որքան կուզես արևի վաննա ընդունիր:

Բայց քիչ էր պատահում, որ մողեսները հանգիստ պառկած մնային արևի տակ. զարմանալի անհանգիստ և շարժուն արարածներ են դրանք: Թեև մեծ-մեծ և բավական երկար ոտքեր ունեն, բայց քայլում են մի տեսակ չռված, տափակացած, ոտքերը ծալծլած և փորները գետնին քսելով: Բայց՝ գլուխները միշտ բարձր պահած, կզակն ու դունչը շարունակ դես-դեն մեկնելով, աջ ու ձախ հետաքրքրությամբ նայելով: Սալին մեկնված, աչքիս պոչով հաճախ եմ դիտել այդ սողունների վարքը: Ներկայությունիցդ երկյուղած, վազում, մտնում է մի ճեղք կամ քարի հետևը: Չկարծես, թե տեղն ապահով է, ուրեմն հանգստացավ: Ո՛չ, դեռ մի տասն անգամ շուռ կգա, դուրս կնայի իր ճեղքից կամ քարի հետևից «կծկրակի», նորից կանհետանա, նորից գլուխը կհանի, տեսնելու, թե ի՛նչ բանի ես, հո վտանգավոր բաներ չե՞ս ձեռնարկում իր դեմ: Քանի այնտեղ ես, հանգստություն չունի այդ արարածը. շարունակ քեզ պահում է հսկողության տակ և անմիջապես արձագանքում է ամեն շարժումիդ: Նույնիսկ հետևում է հայացքիդ՝ աչքն աչքիդ գցած, կարծես ճգնում է կռահել մտադրությունդ: Կուշտ կերած ժամանակ անգամ օձի նման թմրած ու անտարբեր չէ այդ սողունը. մշտարթուն է, կգոն և հետաքրքրվող:

Առվի մոտ միջատներ որսող մողեսներին քշում էինք խոտերի միջից, և նրանք սալաքարն ի վեր սլանում էին դեպի իրենց բները՝ ժայռի վերին ճեղքերը: «Սլանում» արտահայտությունը կարծես թե սակավ չէ սողունին, բայց, հավատացնում եմ, այնքան ճարպիկ և արագաշարժ էին նրանք, որ հետևներից վազելով հազիվ էինք հասնում: Հասնելն էլ դեռ բավական չէ, պետք է կարողանաս բռնել, իսկ մողեսին բռնելը հեշտ չի. կեռ ու մեռ արագ շարժումներով դուրս է պրծնում մատներիդ տակից, մեջքից բռնում ես՝ շուռ է գալիս կծելու փորձ անում, պոչից ես բռնում՝ պոչի մի մասը թողնում է ձեռքիդ մեջ, ինքը փախչում կտրված պոչով:

Այնքա՜ն պոչատ մողեսներ եմ տեսել: Այդքանի պոչերը միայն հո մե՞նք չէինք կտրել: Ըստ երևույթին, մողեսները իրենց պոչերը թողնում էին իրենց այլ թշնամիների մոտ ևս: Այն ժամանակ ես իհարկե չգիտեի, թե դա մողեսի համար ինքնապաշտպանության կենք է: Հետագայում, երբ տավարած էի, մի դեպք պատահեց, որ վրա ընկա ու ցանկացա բռնել թփի տակ քնած նապաստակին: Նա դուրս պրծավ գրկիցս: Ձեռքս գցեցի պոչին և՝ զարմացա, որ պոչը անմիջապես, շատ հեշտությամբ պոկ եկավ ու մնաց ձեռքիս մեջ: Իսկ երբ որսորդ էի, նկատում էի, որ խփված կաքավը հեշտությամբ դես-դեն է թափում իր փետուրների մի մասը: Բռնում ես վիրավոր թռչունին՝ փետուրները մնում են ձեռքիդ, իսկ ինքը դուրս է պրծնում:

Անշուշտ, սրանք կենդանու համար կյանքը փրկելու միջոց են:

Պատահում էր մողեսներին մենք սպանում էինք և հետո ծըգ-ծգում, փորձում էինք պոչները. ա-մուր էին, պոկ չէին գալիս: Բայց պատահում էր պոչի ծայրից բռը-նում էի, իրեն գլխի վրա կախում և անգամ իր չնչին ծանրությունից պոչը պոկ էր գալիս ու ինքը փախչում էր, ճիշտ է, ոչ այնքան ճարպիկ, ինչպես փախչում են ա-ռողջ պոչ ունեցողները: Սա՛ նույնպես մի բան նշանակում է. քանի կենդանի է, պիտի պոչը կռճի, որ ինքը փրկվի: Երբ արդեն մեռած է, պոչից ազատվելն այլևս չի օգնի...



Բլրի ամբողջ հարավային լանջը բռնող տափակ սալաքարը գորշ գույն ուներ: Այդ էր պատճառը, որ գորշ էին նաև նրա բնակիչները: Այնպես որ շատ պի-տի մոտենայինք, որ նշմարեինք գորշ սալին մեկնված գորշ մողեսին: Դրան հակառակ, առվի ափի կմրուխտ կանաչի մեջ ապրող մողեսները կանաչ գույն ունե-ին,— շատ դուրեկան կանաչ, դրանք ուղղակի հիա-սքանչ արարածներ էին:

Լսած կամ տեսած չկամ, որ որևէ մողես, նույնիսկ մեզ վախ ազդող անճոռնի «քարաթոթոշը» (դոդոշ) որևէ չափով վնաս հասցրած լինի մարդու կամ նրա սեփականությանը: Անմեղ, անվնաս, մեծ մասամբ օգ-տակար արարածներ են դրանք, որ ոչնչացնում են վնասակար միջատներին: Իսկ մենք՝ գյուղական երե-խաներս, անխղճաբար սպանում էինք նրանց... Այդ օգտակար արարածները կռճ են գնում նաև գիշատիչ թռչուններին, օձերին և այլ թշնամիների:

Սովետական Հայաստանի բնության մեջ մինչև այժմ հայտնաբերված է մողեսի 17 տեսակ: Մողեսնե-րի ամենից շատ տեսակներ (11 տեսակ) ապրում են մեր երկրի կիսաանապատային գոտում և ամենից քիչ՝ մարգագետիններում, անտառներում և այգիներում (3 տեսակ):

Մեր երկրի մողեսների կյանքը գրեթե չի ուսում-նասիրված, անգամ չկան նրանց մեծ մասի հայկական անունները: Հաջորդ համարում ես կնկարագրեմ մեր երկրի մողեսներից միայն մեկին, որին ավելի մոտիկից եմ ճանաչում: Դա հանրածանոթ լորտուն է:

# ԲՆՈՒԹՅԱՆ ՀԱՇՎԵԿՇԻՌԸ

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. ԳԱՅԱՆԵ ՎԱՐԴԱՆՅԱՆԻ

Ներկայումս երկրագնդի վրա հաշվվում են 1,5 միլիոն կենդա-նական և ավելի քան 500 հազար բուսական տեսակներ: Միլիոնա-վոր տարիների ընթացքում յու-րաքանչյուր օրգանիզմի աճման ու զարգացման համար մեր մոլո-րակի վրա ստեղծվել են կյանքի համեմատաբար կայուն պայման-ներ: Ստեղծվել ու կարգավորվել է կենսամիջավայրի (բիոսֆերա) հավասարակշռությունը, կենսա-բանական մեծ ու փոքր շրջանա-ռությունները, որտեղ ամեն մի բուսական, կենդանական տեսակ, յուրաքանչյուր օրգանիզմ ունի իր հաստատուն տեղը, դերը, յու-րաքանչյուր տեսակ կազմում է կենսաբանական բարդ շղթայի մի օղակը, որի բացակայությունը խախտում է բնության ամբողջա-կանությունը, ընդհանուր հավա-սարակշռությունը:

Ամբողջ տիեզերքում կանաչ բույսը այն միակ օրգանիզմն է, որը կարող է օրգանական նյութ ստեղծել: Արեգակի լույսի ազդե-ցության տակ, ջրի և ածխաթթու գազի մասնակցությամբ բույսը ստեղծում է պարզագույն օրգա-նական նյութեր և մեծ քանակու-թյամբ թթվածին է արտազատում: Այսպիսով, բույսը երկու կարևո-րագույն ֆունկցիա է կատարում. մի կողմից օրգանական նյութ է կուտակում, մյուս կողմից օդը հարստացնում է թթվածնով: Սը-ննդառության բարդ սիստեմում կարևոր դեր են խաղում խոտակեր կենդանիները: Դրանք սնվում են բույսերով և իրենք էլ իրենց հեր-թին սնունդ են ծառայում գիշա-տիչ կենդանիների համար:

Վերջիններս բնության մեջ չա-փազանց անհրաժեշտ են, քանի



որ դրանց բացակայության հետևանքով խոտակեր կենդանիները արագորեն կբազմանային և կոչնչացնեին ամբողջ բուսականությունը: Գիշատիչներն էլ իրենց հերթին չափից դուրս բազմանալ չեն կարող, քանի որ արագորեն կոչնչացնեին խոտակեր կենդանիներին և իրենք էլ սննդի բացակայության պատճառով կոչնչանային: Ահա թե ինչու գիշատիչների քանակությունը ուղղակի կախման մեջ է խոտակեր կենդանիների քանակից: Այս հավասարակշռությունը կյանքի հիմքն է, բնության կարևորագույն օրենքը:

Հարյուր հազարավոր տարիներ առաջ երկրագնդի վրա երևաց մարդը: Անցնելով զարգացման բարդ աստիճաններ, մարդը վերջ ի վերջո սկսեց զբաղվել երկրագործությամբ: Սա մեծ առաջընթաց էր, որը սակայն մարդուն հակադրեց բնությանը:

Պատմական այդ դարաշրջանում ցամաքները ծածկված էին հսկայական անտառներով: Բերքատու դաշտեր փնտրելով, մարդը հաճախ անտառային հսկայական տարածություններ էր հրդեհում, ոչնչացնում: Երբ անտառներից ազատված հողերը ըսկըսում էին ցածր բերք տալ, այն ժամանակ մարդը նոր անտառներ էր հրդեհում: Սակայն մարդը այն ժամանակ չգիտեր, որ անտառները բնության մեջ հսկայական կարևոր դեր են խաղում, կանոնավորում են ջրային ռեժիմը, օդը հարստացնում են թթվածնով, ջրային գոլորշիներով, հողը պահպանում են լվացվելուց-քշվելուց (էրոզիա), պատսպարան են հանդիսանում բազմաթիվ կենդանիների համար և այլն: Երբ մարդը ոչնչացնում էր անտառները, մերկացած հողերը անձրևներից ողողվում, քշվում-տարվում էին և բացվում էին ժայռերն ու մայրական ապառները: Ոչնչանում էին նաև անտառներում բնակվող վայրի կենդանիները: Այսպես շարունակվեց հազարամյակներ, և երբեմնի հարուստ, անտառապատ շրջանները իսկական անապատներ դարձան: Շատ շրջաններ բնակության համար անպետք ճանաչվեցին և մարդիկ շտապեցին հեռանալ այնտեղից: Մարդու անխոհեմ գործունեության հետևանքով անապատների վերածվեցին Միջին Ասիայի, Մերձավոր Արևելքի, Միջերկրածովյան ավազանի և այլ շրջանների երբեմնի արգավանդ շրջանները: Շատ անապատներ էլ իրենց ծագումով պարտական են քոչվոր-վաչկատուն ցեղերին:

Ներկայումս մարդը հասել է քաղաքակրթության շատ բարձր աստիճանի: Նա ըմբռնում է տիեզերքի ամենաբարձր երևույթները, ստեղծում տիեզերանավեր, ճեղքում ատոմը և գիտական հիմնավորված եզրակացություններ անում: Սակայն մարդը շարունակում է բարբարոսաբար վերաբերվել բնության հետ, օրըստօրե վատթարացնելով իր իսկ գոյության պայմանները:

Սրանից 150 տարի առաջ երկրագնդի անտառապատ տարածությունները կազմում էին 4800 միլիոն հեկտար: Անցած տարիների ընթացքում այդ անտառների ավելի քան 1/3-ը լրիվ ոչնչացվել է: Ներկայումս ամբողջ աշխարհում տարեկան կտրում են ավելի քան 2,5 միլիարդ խորանարդ մետր անտառանյութ, այն ժամանակ, երբ բնափայտի տարեկան վերաճը աշխարհում կազմում է ընդամենը 1,6 միլիարդ խորանարդ մետր: Կտրված անտառանյութի հսկայական մասը հումք է ծառայում թղթի արդյունաբերության համար: «Նյու-Յորք Թայմս» թերթի միայն կիրակնօրյա մեկ համարը կլանում է 77 հեկտար անտառ: Նիգերիայում ամեն տարի կակաոյի ցանքատարածությունները ընդարձակելու նպատակով կտրում են 250 հազար հեկտար անտառ: Կենտրոնական Աֆրիկայի երկրներում ամեն տարի անտառը նահանջում է 1 կիլոմետրով, իսկ Մադագասկար կղզում դրանք գրեթե իսպառ ոչնչացվել են: Գիտնականները ենթադրում են, որ այսպես շարունակվելու դեպքում, 50 տարուց հետո երկրագնդի երեսից ջունգլիները լրիվ կվերանան:

Անտառների ոչնչացման հետևանքով ուժեղանում են նաև հողալվացման (էրոզիա) պրոցեսները: Հաշվարկված է, որ անցած 150 տարիների ընթացքում ԱՄՆ-ում քայքայվել են 114 միլիոն հեկտար բերքառատ հողեր, որոնց մի կգալի մասը շարքից լրիվ դուրս է եկել:

Մինչդեռ ինչպես ցույց են տվել ուսումնասիրությունները, 3 սմ հաստությամբ բերրի հողաշերտերի գոյացման համար պահանջվում է 300—1000 տարի, իսկ 20 սմ հաստությամբ վարելահողի առաջացման համար՝ 2000—7000 տարի: Այնինչ, այդքան հողաշերտը անձրևների կողմից կարող է քշվել-տարվել ընդամենը մի քանի օրվա ընթացքում: Խուանխե գետը Չինաստանում տարեկան միջին հաշվով 1890 միլիոն տոննա հող է քշում-տանում, ընդ որում որոշ տարիներ այդ թիվը կազմում է 2643 միլիոն տոննա: Իսկ որքան բերրի հողեր են դեպի օվկիանոսները քշում աշխարհի բոլոր գետերը միասին վերցրած:

Մարդն անխնա կերպով ոչընչացնում է նաև երկրագնդի կենդանական աշխարհը: Ներկայումս լրիվ ոչնչացվել են 120 տեսակի կաթնասուններ և 150 տեսակի թռչուններ:



Երբ եվրոպացիները հայտնաբերեցին Ամերիկան, այնտեղ 75 միլիոն գլուխ բիզոն էր հաշվվում: Դրանք խոշոր կենդանիներ էին, որոնց քաշը երբեմն հասնում էր 1—2 տոննայի:

Հնդկացի մի քանի ռազմատենչ ցեղերի սովի մատնելու նպատակով եվրոպացիները սկսեցին բիզոնների մասսայական ոչնչացումը: 1870-ից մինչև 1875 թվականները ամեն տարի ոչնչացվել է 2,5 միլիոն գլուխ բիզոն: Երբեմն բիզոններին սպանում էին ուղղակի հաճույքի համար՝ երկաթուղու վագոնների լուսամուտներից: Մի քանի տարի հետո պրերիաներից հարյուրավոր տոննա բիզոնի ոսկոր էին հավաքում սև ներկ ստանալու կամ ուղղակի որպես պարարտանյութ օգտագործելու համար: 1872-ից մինչև 1874 թվականը Սանտա-ֆե երկաթուղով տեղափոխվել է 10 793 350 ֆունտ բիզոնի ոսկոր: Եվ պատահական չէ, որ այդ կենդանին արդեն 1878 թվականին համարյա թե իսպառ վերացել էր երկրագնդի երեսից: Ներկայումս ԱՄՆ-ի ազգային պարկերում ու արգելանոցներում հաշվվում է մինչև 30 հազար գլուխ բիզոն: Նույնպիսի բարբարոսությամբ Գալապագոսյան կղզիներում ոչնչացվեց գիգանտ կրիան. մի քանի տարվա ընթացքում այստեղ որսացվել է 10 միլիոն կրիա: Տուրը, որ մեր ընտանի ցուլերի ազգակիցն է, գլխովին ոչնչացվել է դեռ 1627 թվականին: Վերջին կուբրը Կովկասում սպանվել է 1927 թվականին և ներկայումս հազիվհազ պահպանվում է մի քանի արգելանոցներում: Համարյա գլխովին ոչնչացել են նաև վապատի եղջերուն, կանադական հյուսիսային եղջերուն, անտառային եղջերուն, գրիզլի արջը և այլ կենդանիներ: Ոչնչացման եզրին են կանգնած նաև ասիական ռնգեղջյուրը, հնդկական փիղը, կետաձկները և այլն:

Օվկիանայի կղզիներից մեկի փարոսի պահակը մկների դեմ պայքարելու համար 1894 թվականին Եվրոպայից բերեց մի սովորական կատու: Առաջին հայացքից անմեղ թվացող այդ քայլը ողբերգական հետևանք ունեցավ... տեղական քսենիկուս կոչվող թռչունի համար, որը միայն այս կղզու վրա էր տարածված և բնական թշնամիներ չունենալով գիշերային կյանք էր վարում, կարգացման պրոցեսում կորցնելով թռչելու ընդունակությունը: Ընդամենը մեկ տարվա ընթացքում կատուն լրիվ ոչնչացրեց այս տեսակը:

Այս բոլոր կենդանիներն էլ բնության մեջ ունեցել են իրենց հաստատուն տեղը: Դրանց վերանալով բնությունը անդառնալի կորուստներ է կրել: Նույնիսկ գայլը, որն ամենուրեք վնասակար, ոչնչացման ենթակա գիշատիչ է համարվել, ունեցել է իր նշանակությունը: Եվրոպայում գայլը լրիվ ոչնչանալուց հետո միայն պարզվեց, որ նա բնության սանիտարի ֆունկցիա է կատարել, քանի որ կենդանիների հոտին հետապնդելով՝ ոչնչացրել է ետ մնացող թույլ ու հիվանդ կենդանիներին, դրանով իսկ ազնվացնելով ու բարելավելով կենդանիների ցեղը: Հաշվի առնելով այդ հանգամանքը, ներկայումս ԳՖՀ-ն Կանադայից գայլեր է ներմուծում: Չինաստանում վերացրին սովորական ճնճղուկը, քանի որ այն ոչնչացնում էր բերքի 15—20 %-ը: Սակայն ճնճղուկների անհետանալուց հետո վնասակար միջատների մի այնպիսի գրոհ սկսվեց, որ այս անգամ ոչնչանում էր բերքի 50—60 տոկոսը: Բանից պարզվում է, որ ճնճղուկները սահմանափակել են վնասակար միջատների աճը և մարդուն մեծ ծառայություն մատուցել:

Դանուբ գետի ավազանում շատ է տարածված բակլան (ջրագռավ) կոչվող գիշատիչ թռչունը: Նկատելով, որ դրանք հսկայական քանակությամբ ձուկ և օգտակար թռչուններ են որսում, որոշեցին ոչնչացնել դրանց, որպեսզի որսի ձկան քանակը չպակասի: Սակայն դարձյալ ուշացումով մարդիկ պարզեցին, որ իրենք իրենց հսկայական վնաս են պատճառել, ոչնչացնելով այդ թռչուններին: Մասսայական հիվանդություններ տարածվեցին օգտակար թռչունների և ձկների մեջ: Հիվանդ կենդանիները մասսայական կարգով սկսեցին ոչնչանալ: Պարզվեց, որ «վնասակար» ջրագռավներ որսում են գլխավորապես հիվանդ կենդանիներին, դրանով իսկ կատարելով բնության սանիտարի դեր: Ստիպված եղան ուրիշ վայրերից մեծ քանակությամբ ջրագռավ տեղափոխել Դանուբի ավազանը, այս վնասակար երևույթը կանխելու համար:

Բնության մեջ յուրաքանչյուր կենդանի ունի իր տարածման որոշակի սահմանները: Այդտեղ բնության հաշվեկշիռը այնպես է կարգավորված, որ կերը, գիշատիչները և կենդանու գլխաքանակը իրար լիովին համապատասխանում են: Մարդը երբեմն անգիտակցաբար խախտում է այդ հաշվեկշիռը, որի հետևանքով մեծ բարդություններ են առաջանում: Ահա թե ինչու, հաճախ մարդը բնությանը մեծ վնաս է հասցնում տեղից-տեղ տեղափոխելով զանազան կենդանիներ: 1513 թվականին պորտուգալացիները այծեր տեղափոխեցին Սուրբ Հեղինեի կղզին: Մի քանի տարուց հետո կղզին անապատի



վերածվեց, քանի որ բնական թշնամիների չհանդիպելով, այծերը արագորեն բազմացան և ոչնչացրին կղզու ամբողջ բուսականությունը, այդ թվում նաև անանցանելի, սաղարթախիտ անտառները: Ոչնչացավ նաև խիստ թանկարժեք ու հազվագյուտ սաթի ծառը: Կղզու հողերը ենթարկվեցին էրոզիայի: Նույն բախտը վիճակվեց նաև Գալապագոսյան և Խուան-Ֆերնանդես կղզիներին, որտեղ ևս մարդը անզգուշաբար այծեր էր տարել: Բայց այս բոլորն աննշան դեպքեր են Ավստրալիական աղետի համեմատությամբ, որը տեղի ունեցավ մարդու կողմից այնտեղ ճագարներ ներմուծելու հետևանքով: 1787 թվականին այստեղ բերված մի քանի զույգ կենդանիները չհանդիպելով բնական թշնամիների, կարճ ժամանակամիջոցում այնպես բազմացան, որ գրավեցին մայր ցամաքի 2/3 մասը: Ճագարները խժռում էին բույսերը, ծառերի կեղևները, գյուղատնտեսական կուլտուրաները: Բուսականությունից զրկված ամայի հողերում էրոզիոն ինտենսիվ պրոցեսներ սկսվեցին, որոնք անապատի վերածեցին մայր ցամաքի մեծ մասը: Տեղական խոտակեր կենդանիները չդիմացան մրցակցությանը և սկսեցին ոչնչանալ կերի պակասից: Ոչ մի միջոցառում, նույնիսկ մասսայական որսը չէր սահմանափակում ճագարների աճը: 1945-ից մինչև 1949 թվականը Ավստրալիայից արտահանվել է 428 միլիոն ճագարի մորթի: Ճագարների ավերիչ գործունեությունը սահմանափակելու նպատակով ստիպված եղան 11 հազար կիլոմետր ընդհանուր երկարությամբ երկաթե ցանկապատեր անցկացնել: Սակայն դա էլ ոչ մի արդյունք չտվեց: Ճագարները շարունակում էին տարածվել ու ամայացնել երկիրը: Հաճախակի դարձան երկաթուղային աղետները, քանի որ ճագարները բներ պատրաստելու նպատակով փորփրում էին երկաթուղու հողաթմբերը և խախտում դրանց ամրությունը: Ստիպված եղան այդ կենդանիներին վարակել միկոստապ կոչվող հիվանդությամբ: Արդյունքները ապշեցուցիչ էին. ճագարները համարյա իսպառ ոչնչացան: Միայն դրանից հետո անապատների վերածված Ավստրալիական տափաստաններն ու անտառները սկսեցին ծածկվել փարթամ բուսականությամբ:

Նույնպիսի երևույթ է նկատվել նաև անմտածված կերպով բույսերը տեղից-տեղ տեղափոխելիս: Ջրային հակինթը, կակտուսները և մի շարք այլ բույսեր ներմուծելով նոր երկրներ, իսկական ազգային աղետ են դարձել, տվյալ երկրներին պատճառելով միլիոնավոր դոլլարների վնասներ: Այսպես օրինակ, 1839 թվականին Ավստրալիա բերված սովորական կակտուսը (օպունցիա) այնպիսի կատաստրոֆիկ չափերով սկսեց բազմանալ, որ արդեն 19-րդ դարի վերջում գրավում էր 4 միլիոն հեկտար տարածություն: 1920 թվականին կակտուսը արդեն նվաճել էր ավելի քան 24 միլիոն հեկտար: Կակտուսի նվաճած տարածությունները ավելանում էին տարեկան 4 միլիոն հեկտարով: Ոչ մի գնով հնարավոր չէր ոչնչացնել կակտուսներին: Վերջ ի վերջո, 1925 թվականին Ուրուգվայից Ավստրալիա բերված կակտորլաստիս կակտորում վնասատուն ընդամենը մի քանի տարում ոչնչացրեց դրանք:

Ցանկանալով վերափոխել բնությունը, այն ավելի ռացիոնալ օգտագործելու նպատակով, մարդը հաճախ ճակատագրական սխալներ է գործում: Այսպես օրինակ, անգլիացիները Պակիստանում ջրանցք անցկացրին, երկրի մի շարք չորային շրջանները ոռոգելու համար: Ջրանցքի երկարությունը հասնում էր մոտ հազար կիլոմետրի: Առաջին հայացքից խիստ օգտակար այս գործը իսկական չարիք դարձավ երկրի համար: Ջրանցքից ցած գտնվող դաշտավայրերը շուտով աղակալվեցին և դուրս մնացին գյուղատնտեսական օգտագործումից: Պակիստանի կառավարության կողմից հրավիրված ամերիկացի մասնագետները պարզեցին, որ ջրանցքի պատերը սխալ կառուցելու հետևանքով ջուր են բաց թողնում, որը ստորերկրյա հոսանքներով գնում է դեպի ցածրավայրերը և աղակալման պատճառ դառնում: ԱՄՆ-ից հրավիրված մասնագետները պարզեցին, որ անհրաժեշտ է ծախսել 2 միլիարդ ֆունտ ստեռլինգ, որպեսզի հնարավոր լինի առաջիկա 20 տարիների ընթացքում ուղղել այդ սխալը: Այս և նման օրինակները ցույց են տալիս, որ չի կարելի վերափոխել բնությունը, առանց ճշտորեն կանխատեսնելու, թե ինչի կհանգեցնի դա:

Վնասակար միջատները, որոնց թիվը հսկայական է, ահավոր վնաս են հասցնում մարդուն: Բավական է ասել, որ դրանք միայն Հնդկաստանում ոչնչացնում են 360 միլիոն ֆունտ ստեռլինգի արժողությամբ սննդամթերք, որը կարող էր կերակրել 40 միլիոն մարդու: Միջատներին ոչնչացնելու համար գիտնականները ստեղծել են ինսեկտիցիդներ, մոլախոտերը ոչնչացնելու համար՝ հերբիցիդներ: Նման նյութերը կոչվում են նաև պեստիցիդներ: Այդ քիմիական միացությունները մեծ վտանգ են ներկայացնում մոլորակի բոլոր կենդանի էակների ու բույսերի համար: Դրանք աստիճանաբար կուտակվում են մարդու և կենդանիների օրգանիզմում, բույսերի մեջ, կաթի միջոցով անցնում երեխաներին ու մատղաշ կենդանիներին, հայտնաբերվել են նույնիսկ ձվի մեջ: Դրանք խիստ վտանգավոր թույներ են, որոնք կարող են առաջացնել կանայան հիվանդություններ, ազդել օրգանիզմի նորմալ զարգացման վրա և այլն:

Այդ վնասակար երևույթները կանխելու նպատակով ներկայումս գիտնականները նորանոր ուղիներ են փնտրում վնասակար միջատները կենսաբանական եղանակներով ոչնչացնելու ուղղությամբ: Այստեղ հիմնականը այն է, որ յուրաքանչյուր միջատի դեմ օգտագործում են նրա բնական թշնամուն՝ գիշատիչին, որը վտանգավոր չէ օգտակար ու անհրաժեշտ միջատների համար (մեղու, մրջյուններ և այլն):

ԷՋԵՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԻՈՆԵՐԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ



# ՄԵՐ ԱՌԱՋԻՆ ԷՔՍԿՈՒՐՍԻԱՆ ԵՎ ԱՌԱՋԻՆ ՃԱՄԲԱՐԸ

ՄԱՐՈ ԱԼԱՋԱՆ

Մեր նորածին պատկոմական կազմակերպության առաջին էքսկուրսիան կատարվեց Երևան, Ալեքսանդրապոլ (Լենինական), Ղարաքիլիսա (Կիրովական), Ալավերդի երթուղով:

Այդ 1921 թվի օգոստոսի սկզբին էր: Ստյոպան բացատրեց մեր էքսկուրսիայի նպատակը, անելիքները, և ավելացրեց.

— Այսօր երեկոյան ժամը յոթին կազմ ու պատրաստ լինել պատկոմական շտաբում:

Ուղիղ ժամին կազմ ու պատրաստ ներկայացանք շտաբ: Ուրախ ու կուռ շարքերով, թմբուկի ռիթմիկ տակտի տակ, շարժվեցինք դեպի կայարան: Կայարանամերձ քարաշատ ու փոշոտ բլրի վրա տեղավորվելով, սպասեցինք գնացքին: Արդեն ուշ գիշեր էր, բայց գնացքը չկար ու չկար: Մենք գետնին անկողիններ բացեցինք, բարձերի փոխարեն գլխներիս տակ դրեցինք մեր պայուսակները և քնեցինք:

Առավոտյան վաղ հնչեց պատկոմական շեփորը, բոլորս մեկ մարդու պես ոտքի ելանք:

— Շա՜րք,— հնչեց Ստյոպայի հարազատ ու հաճելի ձայնը:

Մեր շարքերը շարժվեցին դեպի կառամատույց, ուր արդեն սպասում էր գնացքը: Բարձրացանք ու տեղավորվեցինք երկու ապրանքատար վագոններում: Մեկում՝ աղջիկները, մյուսում՝ տղաները: Մենք՝ աղջիկներս մոտակա տներից դույլեր, ջուր ու ավել բերեցինք, մեր այդ երկու վագոնները մաքրեցինք, կարդարեցինք ծաղիկներով, ճյուղերով և մեր կարմիր դրոշակներով: Այդպիսով տոնական տեսք տվինք նրանց:

Ապա սկսեցինք երգել ու պարել: Թառի վրա նվագում էր Թաթուլ Ալթունյանը: Պարում էինք բոլորս, ուրախ էինք բոլորս, ցնծում էինք բոլորս: Մեր երգի ձայնը տարածվեց կայարանով մեկ, կայարանի հասարակությունը շրջապատել էր մեր վագոնները և դիտում էր մեր երգն ու պարը:

Վերջապես շոգենավը փնչաց, թշշաց, ճիչ արձակեց ու դանդաղորեն տեղից շարժվեց:



Առաջին քաղաքը ուր կանգ առանք՝ Ալեքսանդրապոլն էր: Հեռվից երևում էր մերկ, անծառ ու անճյուղ Գյումրի քաղաքը (Լենինական): Շուտով մենք կայտառ քայլերով անցնում էինք Գյումրու նեղլիկ, փոշեպատ, կեղտոտ փողոցներով: Մեր երգի վրա տներից դուրս էին թափվում ոտաբոբիկ, ժպտադեմ, խլրտուն մանուկները, ձեռքերը վեր բարձրացնելով, մանկական ուրախ կանչերով և ուռաներով, ողջունում մեր մուտքը իրենց քաղաքը: Մենք երգ ու նվագով անցանք մի շարք փողոցներով և այնուհետև տեղավորվեցինք մեկ հատկացրած դպրոցում: Մյուս օրը Ալեքսանդրապոլի դպրոցականների համար մի մարզահանդես տվեցինք, ցուցադրեցինք մեր շնորհքները: Իսկ Ստյոպան ելույթ ունեցավ, բացատրեց պատկոմական կազմակերպության նպատակներն ու անելիքները:

Մյուս օրը մեր գնացքը շարժվեց դեպի Ղարաքիլիսա (Կիրովական): Այստեղ նույնությամբ կրկնեցինք Ալեքսանդրապոլի ծրագիրը, որը դարձյալ ջերմ ընդունելություն գտավ:

Այնուհետև մեր գնացքը շարժվեց դեպի Ալավերդի: Ահա և Ալավերդու ուս-ուսի տված գանգուր բլուրների դարավոր պարը:

Մենք՝ առաջին ճամբարականներս, Ալավերդու խիտ ու մթին անտառներում խփեցինք մեր առաջին «վրանները»: Ի՞նչ վրան, ո՞վ էր մեկ վրան տվել: Մի ստվերախիտ չինարու տակ տեղավորեցինք մեր ճամպրուկները և վազեցինք մոտակա գետը լվացվելու և լողանալու: Անձրև օրերին հավաքվում էինք նույն մեր չինարու տակ և պաշտպանվում անձրևից: Եղանք Ալավերդի գյուղում (այն ժամանակ Ալավերդին դեռ քաղաք չէր) և Ստյոպան այստեղ նույնպես պեկուցեց պատկոմական կազմակերպության նպատակների և անելիքների մասին: Վերջում տվեցինք գրական և երաժըշտական ճոխ համերգ:



Համաձայն կայարանապետի խոստման, գնացքը պետք է վերադառնար 2—3 օրից, բայց սպասեցինք մեկ օր, երկու օր, անցավ մեկ շաբաթ... մեր ուտելիքի վերջին պաշարները սպառվեցին, իսկ գնացքը չկար ու չկար:

— Ա՜խ, եթե տուն հասնեմ, մի բոքոն հաց միանգամից կուտեմ,— ասում էր մեկը:

Սկիզբը՝ «Պիոներ» № 9, 1971։

— Իսկ ես մի բորոն հացը և մի պղինձ տոլման միանգամից կուտեմ,— ասում էր մյուսը:

Ստյոպան լուռ լսե՜ց, լսե՜ց քաղցածներիս երազանքները և պատասխանի փոխարեն հրամայեց.

— Շա՜րք, անտառ ենք գնում՝ տանձ ու խնձոր ուտելու:

Եվ այսպես մեկ շաբաթ անտառապտղով սնվելուց հետո, մեկանից շատերը տկարացան, բայց ոչ մեկից ոչ մի դժգոհություն, ոչ մեկը չկորցրեց իր հոգու կորովը:

Ի վերջո Ստյոպան ստիպված եղավ երեք տղաների ուղարկել մոտակա գյուղերը հաց հայթայթելու:

Արդյոք գյուղում հաց կճարվե՞ր, չէ՞ որ 1921 թիվն էր, խորհրդային իշխանության հաստատման առաջին տարին: Տնտեսական ծանր օրեր էր ապրում մեր երկիրը: Մի պարկ առած գյուղ գնացին՝ Երվանդ Խալեյանը, Հրայր Իսաբեկյանը և Աղասի Դարբինյանը:

Քաղցին դիմանալը այնքան էլ հեշտ բան չպետք է կարծել:

Մի օր Ստյոպայից գաղտնի մի խումբ աղջիկ-տղա մոտակա եգիպտացորենի արտը մտան: Քիչ անց, ճամբարը եկավ մի գյուղացի և պայրացած ասաց.

— Ո՞վ է սրանց մեծը:

— Ե՛ս եմ, հայրի՛կ ջան,— ասաց Ստյոպան, նրան մոտենալով:— Ի՞նչ է պատահել, լսում եմ ձեզ:

—Ինչ է պատահել... կուկուռուզիս արտը սրբել տարել են:

— Հանգստացե՛ք, հանգստացե՛ք, հայրի՛կ ջան, հիմա ես ամեն ինչ կպարզեմ... «Շարք»,— ասաց Ստյոպան:— Մենք կողք-կողքի շարվեցինք, իսկ գյուղացին ու Ստյոպան կանգնեցին շարքի դիմաց: Ստյոպան նրան դառնալով ասաց.

— Նայի՛ր, հայրի՛կ ջան, տես որնէ մեկին կճանաչե՞ս:

— Ո՞նց ճանաչեմ, բոլորն էլ մի տեսակ են հագնված, գիտեմ որ աղջիկ ու տղաներ էին, բայց որո՞նք էին, մեկ առ մեկ ցույց տալ չեմ կարող:

Ստյոպան հետո դարձավ մեզ.

— Երեխանե՛ր, ովքեր սխալմամբ եգիպտացորեն են քաղել, թող բերեն և ինձ տան, պատկոմի համար ստելն ամոթ է:

— Ընկե՛ր Ստյոպա, ես միայն մեկ հատ եմ քաղել, այն էլ կերել եմ:

— Ընկե՛ր Մանուկյան, խնդրեմ, վերցրե՛ք:

Շարքից դուրս գալով, մեկը՝ գրպանից, մյուսը՝ ծոցից, երրորդը՝ գլխարկի միջից, հանեցին եգիպտացորենները և հանձնեցին Ստյոպային:

— Ընկե՛ր Ստյոպա, ծառի տա՜կ, ծառի տա՜կ էլ կա,— ասաց տղաներից մեկը դեպի ծառը գնալով:

Երբ եգիպտացորենները իրար վրա թափեցինք, համարյա մեկ պարկ դարձավ: Ստյոպան այն հանձնելով գյուղացուն, 12 հատ ետ խնդրեց, կոթներից թել կապեց, կախեց հանցավորների պարանոցներից: Մի սպիտակ կտորի վրա գրեց. «Մենք գողերին այսպես ենք պատժում»: Կտորը երկու պատկոմների ձեռքը տվեց, կանգնեցրեց հանցավորների շարքի առաջ և կարգադրեց թմբուկ զարկելով տանել նրանց գյուղ: Նրանք լուռ ու անտրտունջ, արցունքներն աչքերին, Ստյոպայի հրամանով դեպի գյուղ շարժվեցին: Բայց գյուղացին Ստյոպային խնդրեց, որ այս անգամ ների նրանց:

— Ընկե՛ր պետ,— ասաց գյուղացին,— մեծ մասը աղջիկներ են, գյուղի առաջ նրանց մի՛ խայտառակի, ես արդեն իմ կուկուռուզները ստացա, շնորհակալ եմ քեզնից:

Մեր և գյուղացու խնդրանքով, Ստյոպան շարքը վերադարձրեց ճամբար:



Ցերեկվա ժամը մեկն էր: Հեռվից լսվեց շոգեքարշի ուժեղ ճիչը: Ահա և նա, երկար ճանապարհորդությունից կարծես հոգնած, փնչալով ու թշշալով կայարան մտավ: Մենք ուրախացած, աղմուկով, մոտեցանք գնացքին, վագոնները բարձրացանք և գրավեցինք մեր տեղերը:

— Ընկե՛ր Ստյոպա, վա՜յ, գյուղ գնացածները մնացին,— ասաց աղջիկներից մեկը:

— Չեն մնա, դրա մասին էլ է մտածված,— պատասխանեց Ստյոպան:

Գնացքը դանդաղորեն շարժվեց ու քիչ հետո շըփշըփալով արագացրեց ընթացքը: Մեկ էլ բլրի վրա նշմարվեցին երեք ուրվագծեր, մենք մեր աչքերին չհավատալով, Ստյոպային դիմեցինք: Նա հեռադիտակով նայեց հեռվում մնացած բլուրներին և ուրախացած ասաց.

— Այո՛, նրանք են՝ մեր տղերքը:

Ահա և լսվեց պատկոմական շեփորի հաճելի ձայնը: Ի պատասխան, մենք բարձրացնում աղաղակներով մեր թաշկինակներն ու դրոշակները թափահարեցինք և նրանց իմաց տվինք, որ մենք գնացքումն ենք: Բայց գնացքը վազում ու վազում էր, անպատասխան թողնելով նրանց շեփորի ձայնը: Վերջապես բաց դաշտում, գնացքը կամաց-կամաց ընթացքը դանդաղեցրեց և կանգնեց: Երեք տղաները քրտնած, կարմրած, բեռնավորված, շնչասպառ, վագոնները բարձրացան: Մենք շրջապատեցինք նրանց և քաղցած հայացքներով պարկը տնտղեցինք:

— Ապա մի տեղնե՛րդ նստեցեք,— հրամայեց Ստյոպան: Տղաների հետ միասին նա հացը բաժանեց կտորների և յուրաքանչյուրիս մի մի կտոր տվեց: Մենք ագահությամբ կերանք, կշտացանք, և հետո Թաթուլ Ալթունյանի թառի ուրախ նվագի տակ, նորից սկսեցինք երգել ու պարել մինչև տեղ հասանք:




## ՀԵՔԻԱԹԱՅԻՆ ՔԱՂԱՔԸ

Բուդապեշտի գեղեցիկ վայրերից մեկում, Հունգարիայի պիոներական շարժման քանհինգամյակի առթիվ, կկառուցվի հեքիաթային քաղաք Մինիապոլիսը: Քաղաքում կտեղադրվեն անցյալի և ներկայի ճարտարապետական նշանավոր կառույցների փոքրացված պատճենները. նախամարդու քարանձավ, եգիպտական բուրգ, հին աշխարհի յոթ հրաշալիքները, Աթենքի Ակրոպոլիսը, Հռոմի Կոլիզեյը, Պերսեպոլիսի պալատը, Տիտուսի հաղթական կամարը, հին եգիպտական մի տաճար, ինչպես նաև Օլիմպիան՝ ձիթապտղի պուրակներով, մարմարե տաճարներով և մեծ կորավարների կիսանդրիներով:

Մինիապոլիսում կլինեն Վենետիկի Սուրբ Մարկոսի հրապարակը, Պիզայի աշտարակը, Փարիզի Աստվածամոր և Հռոմի Սուրբ Պետրոսի տաճարները, Վիեննայի Բելվեդեր պալատը, Բաստիլիան, Լենինգրադի Ձմեռային պալատը, Էյֆելյան աշտարակը:

20-րդ դարը կներկայացվի ՄԱԿ-ի շենքով, Հիրոսիմայի Խաղաղության հրապարակով, Մոսկվայի Համագումարների պալատով, Բրյուսելի Ատոմիումով, Բրազիլիայի նոր մայրաքաղաքի կենտրոնով և այլն:

Մինիապոլիսի կենտրոնում կլինի արհեստական լճակ, որի մեջ խարիսխ գցած կանգնած կլինեն Կոլումբոսի «Սանտա Մարիա» առագաստանավը, «Ավրորա» հածանավը, «Տիտանիկ» և այլ հայտնի նավեր: Լիճը թափվող գետերի վրա կլինեն աշխարհի բոլոր նշանավոր կամուրջները: Քաղաքի երկաթուղիներով կշարժվեն փոքրիկ գնացքներ, որոնք պատկերացում կտան երկաթուղու պատմության մասին:

## ՔԱՐԵ ԴԱՐ՝ 1971 ԹՎԻՆ

Քաղաքակրթությունը տիեզերքի դուռն է բախում, իսկ մարդկության որոշ հատվածներ կան, որ դեռևս չեն անցել քարե դարից այս կողմ: Ահա թե ինչ է պատմում արևմտագերմանական մի արշավախումբ: Անցնելով Մամա-տամայից 1500 կմ, ջունգլիների խորքերը, ապա չորս օր շարունակելով ճանապարհը գետի վրայով, արշավախումբը հասավ Բոկա Մաբակա: Այստեղ, բնության դաժան պայմաններում ապրում են հնդկացի վայքաների մի քանի ցեղեր, որոնց ընդհանուր թիվը հազիվ 15000-ի է հասնում:

Վայքաների գյուղը իրականում մի տուն է՝ ճյուղերից և լիանաներից պատրաստված շրջանաձև մի

## «ԼԱՏՎԻԱՅԻ ՊԻՈՆԵՐԸ» ԱԿՈՍՈՒՄ Է ՕՎԿԻԱՆՈՍԻ ՋՐԵՐԸ

*Նավաստի հայրերի արած հետաքրքիր պատմությունները Ռիգայի դպրոցականների մեջ վաղ մանկուց մեծ սեր են բորբոքել դեպի ծովն ու ծովային գործը: Նրանք իրենց դպրոցներում պատանի ծովայինի խմբակներ ունեն, սովորում և մեծերի հետ ծով են դուրս գալիս:*

*Մի օր էլ նրանք կոչ արին հանրապետության բոլոր պիոներներին հավաքել մետաղի այնքան ջարդոն, որ դրանից գոյացած միջոցներով կարելի լինի մի նավ կառուցել «Լատվիայի պիոներ» անունով: Նրանց կոչը լայն արձագանք գտավ:*

*1970 թվականի գարնանը մեծ հանդիսավորությամբ Ռիգայից դեպի Բալթիկ ծով իջավ «Լատվիայի պիոներ» բազմահազար տեղանոց օվկիանոսային հսկա նավը: Նավի աշտարակի վրա մեր Միության կարմրաբոց դրոշի կողքին հպարտորեն փողփողում է հանրապետության պիոներների ալ դրոշը: Ներկաները*




*խաղաղ նավարկություն ցանկացան «Լատվիայի պիոներին», ու նավը սկսեց հանդարտ ակոսել օվկիանոսի ջրերը, ուղղություն վերցնել դեպի հեռու ափեր: Սաթե ափի՝ այդ հրաշք երկրի պիոներները նրա ամեն վերադարձին նավահանգստում ծաղիկներով, երգերով ու ցնծությամբ կդիմավորեն իրենց սիրելի նավը:*

ՎԱԼԵՐԻ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Ռիգա—Երևան*

կառույց, որի մեջ համայնքի յուրաքանչյուր ընտանիք իր անկյունն ունի. մի թախտ և մի օջախ Նրանք կարճահասակ, թուխ-պղնձագույն մաշկով, փայլուն, սև աչքերով, սև մազերով և սակավախոս մարդիկ են, ոչ այն պատճառով, որ մռայլ են, այլ որ չափազանց սահմանափակ լեզու ունեն:

Վայքաները նույնիսկ անուն չունեն և չգիտեն հաշվել: Լրիվ մերկ, բնության այդ զավակները սպիտակ այցելուներին ընդունում են ժպիտներով, բարեկամաբար, ամենուրեք նույն բացականչություններով՝ «քան-քան», «քան-քան», որ նշանակում է՝ ուտելիք:

Հնդկացի վայքաները տանջվում են սննդի սակավությունից: Տարօրինակ է, **բայց շրջապատի** հարուստ ջունգլիները բավական ժլատ են **նրանց նկատմամբ**: Ճիշտ է, բանան **ու մրգեր**, **որ** ըստ սահմանված **կարգի**, **կանայք** են հավաքում, միշտ էլ **կա**, բայց միս հազվադեպ է լինում: Տղամարդկանց զենքերն են՝ ամուր եղեգնից պատրաստված, ծայրին տաշած սուր **քար** ամրացրած նետն ու նիզակը: **Նրանք** խմբով որսում են կապիկ, լապաս (ջունգլիների նապաստակ), ինչպես նաև վայրի բադ, գորտ, կրիա, օձ ու կոկորդիլոս: Կրակ ստանում են՝ չոր տերևների մեջ փայտերը իրար շփելով: Կապիկը վայքաների նախընտրած ճաշն է: Կապիկի միսը հարգի օժիտ է տղայի համար, որի



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

օգնությամբ նա կարող է ուզած աղջկա հետ ամուսնանալ:

Հնդկացի վայքաները մահից չեն վախենում: Սահմանված կարգ ու կանոնի համաձայն, սպանում են իրենց, իսկ թուլակամ երեխաներին, երկվորյակներից մեկին, հիվանդներին, անճարակներին, քանի որ նրանք ուտելիք պահանջող ավելորդ բերան են:

Թաղման արարողությունը բարդ է: Մահացածին հանդիսավորությամբ վառում են խարույկի վրա, վառված ոսկորները ջարդում և փոշիացնում: Ոչ ոք չի լալիս: Հաջորդում է ուրախ կերուխումը, որովհետև նրանց համոզմունքով՝ հանգուցյալը գնացել է մի երջանիկ վայր, որտեղ «ուտելիքը առատ է, ինչպես ավազը Օրինոկոյի ափին»...

Վայքաները կռվում են այն ցեղերի հետ, որոնք փորձում են առևանգել իրենց ցեղի կանանց, ավերել տունը կամ փախցնել որսը: Բայց ինչ էլ որ անեն, նախ խորհրդակցում են քուրմի հետ, որը ոգիների հետ հաղորդակցության մեջ է մտնում այդ նպատակի համար քթի մեջ քաշելով հրաշալի յոպոն՝ խաշխաշի ազգակից ինչ-որ բույսի փոշին:

Վենեսուելայի օրենքները չեն տարածվում վայքա հնդկացիների վրա: Նրանք անպատասխանատու են իրենց արարքների համար: Կառավարությունը ոչ մի օգնություն ցույց չի տալիս նրանց, հաշվի առնելով Բոկա Մաբակայի հեռավորությունն ու ճանապարհի դժվարությունները: Առայժմ վայքաներին այցելում են միայն արշավների սիրահարները:

*Ռուսերենից թարգմ.*
*Տ. ԴԱՐԲԻՆՅԱՆԻ*





# ՀԱՆԳՍՏԻ ԺԱՄԻՆ

## ԱՌԱՋԱՐԿ



Նեկտար հավաքելու համար՝ մեղուն դուրս եկավ Ա վանդակից, անցավ բոլոր վանդակներով, բացառությամբ «թունավորվածների», և վերադարձավ նախկին տեղը։ Նա ամեն վանդակում եղավ միայն մեկ անգամ։

Փորձիր գտնել մեղվի անցած ճանապարհը։

*Առաջարկ՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

*ՍԻՄՈՆ ՀԱԿՈԲՅԱՆ*

Այն ինչն է, որ հետք է թողնում
Կյանքում ամեն մեկի վրա,
Եվ ինչ անես ու ինչ չանես,
Այդ հետքերը չեն վերանա։

(Տարիքը)

Գարուն, ամառ և աշուն
Շոր է հագնում գույնզգույն,
Հենց որ ձմեռն է գալիս,
Մերկանում է ու լալիս։

(Ծիածանը)

Ո՛չ տեսք ունի, ո՛չ էլ գին,
Կյանք է տալիս ամենքին։

(Օդը)


Լույս է տեսնում 1923 թվականից



ՊԻՈՆԵՐ

№ 12 դեկտեմբեր 1971 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
Եկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: Ереван-200, ул. Кармир банаки, № 15, почт. инд. 375200.

*Հասցեն՝ Երևան—200, Կարմիր բանակի փողոց, № 15, փոստային ինդեքս՝ 375200։*
*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 05479։ Պատվեր 1169։ Տպաքանակ՝ 68200։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 29/XI 1971 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։



ԳԻՆԸ՝ 10 Կ

ԻՆԴԵՔՍ՝ 77806

# ՍԱՌՆԱՄԱՆԻՔ

ՀՈՎՍՈՒՍ ԱՓԵՐ

Սառը ձյունն իջավ
Ծածկեց սար ու ձոր,
Խորը քուն մտան
Դաշտերը բոլոր:
Ժիր մանուկները
Սահնակներ առած՝
Սղղացին ուրախ
Գետափին սառած:
Սառնամանիքը
Համբուրեց նրանց,
Համբույրի տեղը
Մնաց կարմրած:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ